# ԳԱՐՈՒՆ

ՀԱՄՈ ՍԱՀՅԱՆ

Վառարանի վերջին ծուխն է
Երկնքի մեջ անէանում,
Արթնանում են կամաց-կամաց
Քնած ծառերն Աբովյանում:
Նորքի լանջին հովերն արդեն
Դուրս են կանչում մանուշակին,
Ծիծեռնակի թևն է քսվում
Մեր կարմրածուփ դրոշակին:
Արագածն է ժպտում հեռվից,
Ամպն է հեռվից խուլ որոտում,
Սարյակներ են թռցնում կարծես
Գործարանի փողերն օդում:
Եվ Լենինը ողջ Երևանն
Առած իր խոր հայացքի մեջ,
Մարմարինե պատվանդանից
Ողջունում է գարունը պերճ:



# Փոթորիկը

ՀԱԿՈԲ ԳՈՒՐՈՒՆՅԱՆ

Նկ. ՎԱՋԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Վլադիմիր Իլյիչը նստած իր «կանաչ առանձնասենյակում», խորասուզված էր մտքերի մեջ: Երբեմն-երբեմն, գրիչը ձեռքին, կապույտ կազմով տետրն էր քրքրում, այն տետրը, որ կուսակցական ընկերները բերել էին Ստոկհոլմից, որտեղ Իլյիչը թողել էր ապրիլին, երբ անցնում էր սահմանը: Շատ տարիներ առաջ, Շվեյցարիայում, դրա վրա քիչ քրտինք չէր թափել, երկար աշխատել, զանազան աղբյուրներից կարևոր մտքեր էր ծաղկաքաղ արել, որ հետագայում օգտագործի իր նոր աշխատության համար: Այդ պատճառով էլ մեծ հոգատարությամբ էր պահպանում տետրը:

Նա նստել էր մի կոշտ, ցածր կոճղի վրա, իսկ սեղանի տեղ ծառայում էր տափակավուն մի ուրիշ կոճղ, որն ավելի բարձր էր: Շուտով վարժվեց աշխատանքի այս դժվարին պայմաններին, բայց, այնուամենայնիվ, հաճախ վեր էր կենում, ֆիզիկական շարժումներ անում ու մարմինը թարմացրած, կրկին նստում:

Երկինքը կնճռոտել էր մթագնած դեմքը, բայց անձրև չէր գալիս. քամին խանգարում էր: Իլյիչի ուշադրությունը գրավեցին Ռազլիվի՝ ահռելի վիշապի նման ֆշշոցները. ուրեմն լիճը փոթորկվել էր: Նայեց ժամացույցին: Ճաշի ժամանակը մոտենում էր: Անհանգստացավ:

— Հանկարծ մի վատ բան չպատահի՞...

Կերակուրը բերում էին լճի մյուս ափից: Նա դեժդա Կոնդրատևնան պատրաստում էր, իսկ նրա որդիները կամ հենց ինքը, մակույկով բերում հասցնում Էիս շալաշ:

Վլադիմիր Իլյիչը շտապ ոտքի ելավ, գլխին անցկացրեց կեղծամը, որ շոգի պատճառով հանել էր, հագավ վերնաշապիկն ու արագ դուրս եկավ թաքըս-



տոցից: Նրա արտաքինը հիշեցնում էր այն ֆինն գյուղացիներին, որոնք ամառները փող վաստակելու համար գալիս ու խոտհնձով էին զբաղվում այս վայրերում:

Ջուր չէր Իլյիչի անհանգստությունը: Նադեժդա Կոնդրատևնան ճաշը պատրաստել և հիմա ուղարկելու մասին էր մտածում: Նա դուրս եկավ խոհանոցից, որ գտնի Սերյոժային, տեսավ հարևան սենյակի թախտի վրա քնած է, իսկ նրա կողքին Գոշան էր՝ նույնպես քնած: Ջմայլված նայեց խռմփացնող որդիներին ու ինքնիրեն ժպտաց:

Մոր ականջին էր հասնում լճի չարագուշակ աղմուկը:

— Փոթորկված է մեր Ռազլիվը...— մտահոգվեց նա,— բա Սերյոժկան ո՞նց կտանի:

Եվ որոշեց չարթնացնել նրան ու ինքը պատրաստվեց գնալու:

Կապոցները վերցրեց, հասավ լճափ ու զարմացած կանգնեց: Ալիքները վշվշալով գալիս էին, հոխորտալով զարնվում ափերին ու շնչահեղձ եղած, ետ-ետ էին գնում, որ ուժ հավաքեն ու կրկին հարձակման անցնեն:

Նադեժդա Կոնդրատևնան մի պահ կանգ առավ. անցումը հետաձգելու մասին մտածեց: Բայց իսկույն նրա աչքի առջև եկավ Վլադիմիր Իլյիչի մտավոր աշխատանքից հոգնատանջ եղած դեմքը: Եվ առանց երկար-բարակ մտածելու, ետ գնացող ալիքների հետ



մակույկը սահեցրեց ջուրն ու ինքն էլ թռավ նրա մեջ և արագ-արագ թիավարել սկսեց դեպի մյուս ափը՝ Սեստրորեցկի Ռազլիվը: Բայց ալիքները կատակ չէին անում, այնպես էին զարնվում մակույկին, որ Նադեժդա Կոնդրատևնան, մի պահ մտածեց ետ դառնալ, բայց ուշ էր արդեն...

Վլադիմիր Իլյիչը դուրս գալով իր թաքստոցից, ուշադիր նայեց ուռենիների թփերի միջով, ստուգեց շրջակայքն ու գնաց, արագ մտավ շալաշ: Այնտեղ ոչ ոք չկար: Երևի Կոլյան հետախուզության է գնացել, իսկ Նիկոլայ Ալեքսանդրովիչը դեռ հնձում է, անցավ նրա մտքով: Շտապ-շտապ գնաց դեպի լճափ: Հեռվից տեսավ, որ մի մակույկ է տաշեղի նման տարուբերվում խենթացած ալիքների մեջ, մերթ պարզ երևում էր, մերթ էլ՝ հազիվ-հազ:

Ուշադիր նայեց ու հասկացավ:

— Նադեժդա Կոնդրատևնան է թիավարողը... Ա՛յ, ա՛յ, ա՛յ... Չէ՞ր կարելի սպասել մինչև փոթորիկն անցնի:

Իլյիչը մոտեցել էր լճափին, երբ նկատեց, թե ինչպես մակույկն ամբողջ. երկարությամբ հարվածներ է ստանում ահագնացած ալիքներից:

— Վա՛յ, Նադեժդա Կոնդրատևնա, սխալվեցիր...— անհամբեր դարձած, ելք էր որոնում Իլյիչը.—Նավակի քիթը թեքիր դեպի ալիքները... շո՛ւտ, շո՛ւտ... այլապես...

Նադեժդա Կոնդրատևնան ասես հասկացավ Վլադիմիր Իլյիչի միտքը և սկսեց ճիգ թափել նավակի ուղղությունը փոխելու: Ահա, մի թիակն ավելի ուժով է քաշում, իսկ մյուսը՝ համեմատաբար թույլ: Վերջապես նրան հաջողվեց նավակի քթամասը դեմ տալ խորտակիչ ալիքներին:

Իլյիչն ուրախացավ. նրա շեղավուն աչքերը նեղացան.

— Ապրե՛ս, Նադեժդա Կոնդրատևնա, քաջ թիավարուհի ես... Այդպե՛ս, այդպես...— թեթևացած մտածեց նա:

Իլյիչը վազեվազ գնաց և կրկին կանգ առավ ու սրատես աչքերով զննեց մակույկը:

Ահա, նա ամբողջ արագությամբ թիավարում է դեպի ափը. ասես ոչ մի վտանգ չի սպառնում իրեն:

— Լա՛վ է խիզախում... Բայց պետք է օգնել նրան:

Վլադիմիր Իլյիչը ափին կանգնած, սրտատրոփ հետևում էր մակույկի ընթացքին, երբ իր կողքին նկատեց Նիկոլայ Ալեքսանդրովիչին: Նա էլ հեռվից տեսնելով մակույկը, անհանգստացած վազեվազ եկել էր:



— Տեսնո՞ւմ ես Նադեժդա Կոնդրատևնային... Պետք էր հետաձգել անցումը, քաղցած հո չէինք մեռնի...

Նիկոլայ Ալեքսանդրովիչը՝ հուզմունքը թաքցրած, ասաց.

— Ոչինչ, Վլադիմիր Իլյիչ, ամեն ինչ բարեհաջող է... Քամին մեղմանում է:

Իսկապես, լիճը քիչ հանդարտվել էր, երկնքից կախված սև-սև ամպերի արանքից արևը դուրս էր հանել իր տրտում դեմքը:

Նրանք նստած լճափին՝ գլաքարերի վրա, նայում էին հոգնաբեկ կնոջ հանդարտ թիավարելուն:

Նադեժդա Կոնդրատևնան մոտենում էր ափին: Գիժ քամի բարձրացավ, թռվռացող քամի: Այժմ ուրիշ վտանգի մասին էր մտածում Վլադիմիր Իլյիչը. կարող էր մակույկը ափի մոտ, հատակին զարնվելով, շուռ գալ:

Վլադիմիր Իլյիչը մեկ ոտքի էր ելնում, մեկ՝ նստում: Նիկոլայ Ալեքսանդրովիչն էլ էր մտահոգ. նա ևս նույնն էր մտածում, բայց դեռ ոչինչ չէր ասում Իլյիչին: Նա մտադրվեց շորերը հանել ու գնալ օգնության: Հենց այդ ժամանակ Իլյիչը վեր թռավ, վազեվազ, հենց շորերով իրեն գցեց լիճը և ալիքները ճեղքելով առաջ գնաց: Ջուրն անցավ նրա մեջքից, մոտենում էր վզին, երբ իր ամուր ձեռքերով նա բռնեց մակույկի քթամասից ու քարշ տվեց դեպի եզրը:

Երբ ափին էր մոտեցել, նրան օգնության հասավ Նիկոլայ Ալեքսանդրովիչը, ու միասին դուրս սահեցրին մակույկը:

— Ա՛խր, Վլադիմիր Իլյիչ, ինչո՞ւ ջուրը մտաք... Ես ինքս մենակ ափ դուրս կգայի,— քրտինքը սրբելով, ասաց Նադեժդա Կոնդրատևնան:

— Ո՛չ, այդպես էր պետք, Նադեժդա Կոնդրատևնա... Մեծ վտանգից ազատվեցիք:

— Շնորհակալ եմ, Վլադիմիր Իլյիչ... Իմ պատճառով թրջվեցիք:

Վլադիմիր Իլյիչի շեղավուն աչքերը լայնացան.

— Ներողություն, Նադեժդա Կոնդրատևնա, իմ պատճառով քիչ էր մնում տարերքին կուլ գնայիք... Անհանգիստն եք հա՛...

Ու երեքով ծիծաղեցին: Ծիծաղեցին թեթևացած և նայեցին իրար մտերմիկ սիրով:

## ՉՈՒՇԱՑԱՆ

### ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ

*Ինչու՞ չեն գալիս արագիլները,*
*Մի՞թե այս տարի նրանք կուշանան,*
*Գուցե դեռ փա՞կ են ճանապարհները,*
*Կամ՝ ուրի՞շ երկրում գուցե բույն գտան...*

*Եվ մանուկները աչք, ականջ դարձած՝*
*Նայում են կապույտ երկնքի ճամփին.*
*Արդյոք չի՞ լավի կռինչը նրանց,*
*Կամ դուրս չե՞ն լողա ետևից ամպի...*

*Բայց ոչ... ձյունապատ սարի ետևից*
*Ահա երևաց առաջնորդ ծերը.*
*— Գալի՜ս են, գալի՜ս...— բոլոր կողմերից*
*Ձայնեցին ուրախ երեխաները։*

*Շրջում են դանդաղ գյուղի վերևում,*
*Բարև են հղում ասես բոլորին,*
*Մի զույգ ջոկվում է, մեղմորեն թևում*
*Ու վայր է իջնում մեր բարդիներին։*

*Չէ, չեն ուշացել, դեռ նոր են խորունկ*
*Ձնից արթնանում ձնծաղիկները,*
*Բայց ահա՛, արդեն կատարին բարդու*
*Բույն են հարդարում արագիլները։*



*Հնգամյակի վերջում Ադրբեջանը կսկսի ութ միլիարդ խորանարդ մետր գազ արդյունահանել։ 1940 թվականին գազի արդյունահանումը կազմում էր 2,5 միլիարդ, իսկ 1958 թվականին 4,4 միլիարդ խորանարդ մետր։*

*Վերջին յոթ տարվա ընթացքում «սև ոսկու» արդյունահանումը Ադրբեջանում ավելացել է հինգ միլիոն տոննայով։ Հնգամյակի վերջում հանրապետության նավթագործները կհասցնեն այն 23,5 միլիոն տոննայի։*

# ՍԵՎ ՈՍԿՈՒ ԵՐԿԻՐԸ

Երբեմնի Բաքուն, որին անվանել են ծովափին փռված կրակների քաղաք, որտեղ անձրևի կաթիլը չի հասել պապակած հողին, չորացել է օդում, որտեղ այցելած գիտնականը կամ առևտրականը չի գտել մի կանաչ թուփ, կամ մի ծառ, որի ստվերում փոքր ինչ զովանա, այսօր դարձել է անճանաչելի։

Այժմ Բաքուն շատրվանների. կանաչի ու ծաղկի քաղաք է...

...Ներքևում ծովածոցն է, բազմաթիվ նավերով, բեռնանավերով, լողացող վերամբարձ կռունկներով լցված՝ նավաշինարարներով, անթիվ ու անհամար բազմահարկ շենքերով։

Հին քաղաքից այսօր պահպանվել են միայն Կույսի աշտարակը. բերդի պարսպի մի մասը և աշտարակի կողքին ծվարած մի հինավուրց թաղամաս, որի հողաշեն տներից մեծ մասը նույնիսկ պատուհան չունեն, իսկ անցուղիները այնքան են նեղ, որ դեմ-դիմաց երկու մարդ դուրս գալու դեպքում, իրար քսվելով պիտի անցնեն։ Իր գոյության վերջին օրերն ապրող այդ հին թաղամասը բնակելի չէ այսօր, այլ ուղղակի մի ցուցանմուշ է։

Ծովը, որը բերդի պարիսպն էր շարունակ լվանում, այժմ բավական ետ է նահանջել, և Կույսի աշտարակից սկսած բոլոր կողմերի վրա ձգվում են ասֆալտապատ ու կանաչապարդ փողոցներ, որոնց խաչմերուկներում ցայտում են կովացնող շատրվաններ։ Իսկ երեկոները, երբ մեղմանում է ցերեկվա տապը, ամբողջ քաղաքը ողողվում է հուրհրատող լույսերով։

Եվ հանկարծ, կարծես միանգամից ընդհատվող փողոցներից մեկում, սկսվում է երրորդ Բաքուն՝ նավթային աշտարակներ, խողովակներ, ցիստեռններ, որոնք մերթ ձգվում են լեռնագոգերով, մերթ երևում են լեռնաստորոտում ու մերթ մտնում ծովը։

Երբ մոտենում եք որևէ կայարանի, սովորաբար ռելսերը կըրկնապատկվելով շարունակ ավելանում են։ Իսկ այստեղ՝ Բաքվում, կարծես ձեր տեսած բոլոր կայարանները միաձուլվել ու այնպիսի մի ցանց են կազմել, որ աչք են շլացնում։ Գետինն ամբողջությամբ ծածկված է հաստ ու բարակ խողովակներով, որոնք մեկ ձգվում են զուգահեռ, մեկ միահյուսվելով կախվում են օդում։ Եվ շարունակ ճռճվում են նավթային աշտարակների թափանիվները, որոնք երկրի ընդերքից դուրս են մղում սև ոսկին՝ նավթը։

Իսկ քաղաքից դուրս, երբեմնի պապակ ու արևախանձ անապատները, այսօր առատորեն ողողվում են ջրով և առատ խաղող, բամբակ ու շատ ուրիշ բարիքներ են տալիս։



Բաքու. Նիզամու անվան թանգարանի շենքը



# ԿԱՐԵՎՈՐ ԳՈՐԾ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

ՆԱՐԻՄԱՆ ՍՈՒԼԵՅՄԱՆՈՎ

Տանը բոլորը քնած էին։ Պատրաստվում էի, որ շորերս հանեմ ու ես էլ քնեմ։ Հանկարծ լսվեց հեռախոսի զանգը։ Նրա ձայնը երբեք չէր հնչել այնպես բարձր, ինչպես այս անգամ, այս լուռ սենյակում։ Այո, այս անգամ ինձ շատ տագնապալի թվաց։ Կարծես թե ինչ-որ բան է պատահել, շատ կարևոր բան։ Ո՞վ է զանգ տվողը։ Ինչ իմանաս։ Վազեցի, լսափողը վերցրի, մոտեցրի ականջիս։

— Այո՞։

Պատասխան չկար։ Ոչ ոք չէր խոսում։

— Ալլո։

Դարձյալ պատասխան չկար։ Մի քիչ էլ բարձրացրի ձայնս.

— Լսում եմ ձեզ։

—...

— Զանգ եք տալիս, բարի եղեք նաև խոսել, ձայն հանեք,— ասացի ես և ջղայնացած ցած դրեցի լսափողը։

Սկսեցի ինձ ու ինձ մտածել. տեսնես ո՞վ է զանգ տվողը. չէ՞ որ կեսգիշերն անցել է, այս ուշ ժամին ո՞վ կարող է զանգ տալ։ Գուցե հեռախո՞սն են ստուգում։ Ինչ որ է։ Մտածում էի այն ամենի մասին, ինչ խելքս թելադրում էր։ Հանկարծ հիշեցի հայրիկին։ Գուցե զանգ տվողը նա՞ է։

Հայրիկը Նավթային Քարեր ծովային քաղաքում է աշխատում։ Հորատման վերնակի վարպետ է, Սոցիալիստական աշխատանքի հերոս։ Նա իր օրերը մեծ մասամբ անց է կացնում մեզնից շատ հեռու՝ Նավթային Քարերում և հազվադեպ է զանգ տալիս տուն, այն էլ շատ կարևոր, լուրջ հարցով։ Ընդհանրապես նա հեռախոսով խոսել այնքան էլ չի սիրում։ Այդ պատճառով էլ մեր տանը միշտ խոսակցություն է լինում։ Մայրիկը նեղացած ասում է.

— Ոնց որ մեզ բոլորովին մոռանում ես այնտեղ։

— Ինչու՞։

— Բա որ չես մոռանում, ինչու՞ մեկ-մեկ զանգ չես տալիս, որ մենք էլ այստեղ հանգիստ լինենք։

— Ճիշտ ես ասում։ Բայց գլուխներս գործի մեջ այնքան է խառնված, որ ամեն ինչ մոռանում ենք։

Նավթային Քարերի հետ հեռախոսով կապվելը չափազանց հետաքրքիր է։ Գիտե՞ք ինչու։ Որովհետև դա կատարվում է հատուկ հեռախոսի միջոցով, որը նման չէ քաղաքի հեռախոսներին։ Այսինքն կապ են հաստատում ռադիոալիքների միջոցով։ Որովհետև ծովի միջով հեռախոսային գիծ տանելն անհնարին է։ Մեկ էլ՝ առանց գծի ավելի լավ է։ Դու կանգնում ես այստեղ, իսկ ձայնդ ջրերի միջով անցնում, շատ ու շատ հեռուներ է գնում։ Ինքդ մնում ես ցամաքում, իսկ խոսքդ թևավորված գնում հասնում է ծովի վրա աշխատողին։ Հենց դրա համար էլ ես համամիտ լինելով մայրիկին, միշտ խնդրում եմ, որ հայրիկը շո՜ւտ-շուտ զանգ տա տուն։ Բայց նա...

Մի անգամ տանը նստած խաղում էի ռադիոընդունիչի ալիքների հետ։ Մեկ էլ ինչ լսեցի։ Երկու հոգի խոսում էին իրար հետ։ Մեկը բավականին հաստ ձայն ուներ, բայց անչափ մտերիմ էր խոսում։ Իսկ մյուսը երեխա էր, բարակ ձայն ուներ։ Հասկացա, որ սա բոլորովին էլ սովորական ռադիոհաղորդում չէ, այլ մի ուրիշ տեղից, գուցե և հենց Նավթային Քարերից իր որդու հետ հեռախոսով կապվող մի հայրիկի խոսակցություն.

— Մայրիկին լավ նայիր, տղաս, լսի՛ր նրան։

— Աչքիս վրա, հայրիկ։

— Ապրես, իմ քաջ տղա, ապրե՛ս։ Վաղուց գիտեի, որ դու այդպիսի խելոք տղա ես դառնալու։

— Իսկ որտեղի՞ց գիտեիր, հայրիկ։

— Տղաս, խելոք երեխան դեմքից էլ է երևում։

Հետո ռադիոընդունիչը լռեց։ Էլ ոչինչ չկարողացա լսել։ Բայց նրանց զրույցը շատ դուր էր եկել ինձ։ Ես էլ ուզում էի այդպես մտերմաբար խոսել հայրիկիս հետ։ Իսկ նա զանգ չէր տալիս։

Այս մտորումներով հենց նոր էի մտել անկողին, երբ նորից լսվեց հեռախոսի ձայնը։ Ավելի ուժեղ,

**Ա**դրբեջանի քիմիական արդյունաբերությունը 1970 թվականին գյուղին կտա մոտ մեկ միլիոն տոննա հանքային պարարտանյութ: Երեք տարի սրանից առաջ ընդամենը պատրաստվում էր 36 հազար տոննա:

**Ն**որ հնգամյակում Ադրբեջանը կստանա 600 հազար հեկտար ոռոգելի նոր հողեր: Խաղողի այգիների տարածությունը հանրապետությունում կհասնի 100 հազար հեկտարի:

**Բ**նակչության մեկ շնչին ընկնող էլեկտրականության արտադրությամբ հանրապետությունը առաջ է անցել Ճապոնիայից, Ֆրանսիայից և Իտալիայից, իսկ նավթարդյունահանությամբ՝ ԱՄՆ-ից:



Նավթարդյունաբերության նոր էստակադներից մեկը

քան մի քիչ առաջ էր։ Իսկույն-վեր թռա, ծածկեցի միջանցքի դուռը, որպեսզի մյուս սենյակում մայրիկը չարթնանա։ Հետո մոտեցա հեռախոսին.

— Ալլո։

Այդ պահին հեռախոսի փողից տարօրինակ ղժժոց էր լսվում։ Ավելի ճիշտ այդ դժժոցը շատ նման էր թռչունի թփրտոցի։ Ասես թե ծիտ էր ընկել հեռախոսի փողի մեջ. փը՛րթ, փ՛ըրթ։ Ականջիցս իսկույն հեռացրի լսափողը, որն այդ պահին օդի մեջ ակնոցավոր օձի էր նմանվում։



«Տեսնես ո՞վ է զանգ տվողը,— մտածեցի ես, - երևի ինչ-որ կարևոր մի բան կա»։

Այո, կարևոր գործ։ Լուրջ հարց։ Եթե զանգ տվողը հայրիկն է, նշանակում է իրոք որ շատ կարևոր բան կա։ Թե չէ այս գիշերվա կեսին նա երբեք զանգ չէր տա... Գուցե արթնացնե՞մ մայրիկին։ Ոչ։ Միտքս փոխեցի։ «Ինչու անհանգստացնեմ մայրիկին։ Մեծ տղա եմ։ Մի՞թե ինքս չեմ կարող պատասխանել հեռախոսին»,— մտածեցի ես։

Այդ պահին լսափողի միջից շատ պարզ լսեցի։

— Ալլո՛, ալլո՛։

Ուրախությանս չափ ու սահման չկար։ Թռչունի նման թևեր առած թռչել էի ուզում։ Նա էր՝ հայրիկը։ Լսափողը ավելի ամուր սեղմեցի ականջիս։ Դեռ հայրիկը ոչ մի բան չէր ասել։ Բայց ինձ թվում էր, թե տարօրինակ մի աշխարհ եմ ընկել։ Ասես հայրիկը հեռախոսով չէր խոսում, այլ ռադիոյով ելույթ էր ունենում։ Տարօրինակ էլ ձայն ուներ։ Այդպես Մոսկվայից Լևիտանն է խոսում և շատ կարևոր ու լուրջ տեղեկություններ հաղորդում։

— Այո, հայրիկ։

— Բարև, Աքիֆ։

— Բարև։

— Ինչպե՞ս ես, տղաս։

— Լավ եմ։ Իսկ դու ինչպե՞ս ես, հայրիկ։

— Ես էլ... Լավ եմ, տղաս։ Մայրիկը քնա՞ծ է։

— Այո։

— Ինչպե՞ս է, որ դու...

— Ես էլ պատրաստվում էի քնելու։
— Գիտե՞ս ինչու եմ զանգել, տղա՛ս։
— Ոչ, հայրիկ, չգիտեմ։
— Հապա մի ասա տեսնեմ, երեկ չէ անցյալ օրը թվաբանությունից ի՞նչ ստացար, չէ՞ որ խնդիր էիր լուծել։ Զանգ տվեցի, որ իմանամ։
—...

Ցամաքել, չորացել, արձանի նման անշարժ էի մնացել։ Չգիտես ինչու, պատասխանել չէի ցանկանում։ Նորից լսվեց հայրիկի ձայնը.
— Ալլո։
—...
— Աքիֆ։

Այլևս ոչինչ չէի լսում, ասես խուլ էի։ Ականջներս դժժում էին։ Հենց սրա՞ համար է զանգ տվել հայրիկը։ Մի՞թե չէր կարող տուն վերադառնալուց հարցնել։ Շա՞տ էր պետք։ Լսողն էլ կասի, թե կարևոր բան է։ Հիմա նրան ի՞նչ պատասխան տամ։

— Հայրիկ, եր...եր... ինչ-որ մի բան կանգնել էր կոկորդիս, չէր թողնում խոսեի, լեզուս չէր գալիս, որ «երեք» ասեմ։ Ցամաքից այնտեղ՝ ծովի վրա աշխատող հայրիկիդ հետ խոսես ու այն էլ «երեք» ասես։ Մի՞թե կարելի էր։ Արդյո՞ք դա խայտառակություն չէր։ Իհարկե։ Նոր, հենց հիմա հայրիկի հետ խոսելու ժամանակ միայն ես հասկացա դա։ Նավթային Քարե՞ր։ Այնտեղի աշխատողները կլսեն այդ մասին ու կծիծաղեն վրաս։

Ինքս էլ չիմացա, թե ինչպես ցած դրեցի հեռախոսի լսափողը, որի մեջ դեռ լսվում էր հայրիկի ձայնը։

Եկա ու պառկեցի։ Քնել էր պետք, բայց քունս չէր տանում, աչքերս չէին փակվում։ Մտածում էի հայրիկի մասին։ Գիտեի, որ նա էլ չի քնելու։ Հենց այս րոպեին այսպես, ինձ նման նա էլ պառկել է անկողնում և իմ մասին է մտածում։ Իմ սովորելու մասին։ Զգում էի, որ մի բան էր հոսում, գալիս ու լցվում իմ սիրտը, մտածմունքներիս, զգացմունքներիս մեջ ինչ-որ մի փոփոխություն էր տեղի ունենում։ Հանգիստ պառկել չկարողացա, վեր կացա տեղիցս։ Անկայուն քայլերով եկա ու նստեցի սեղանի մոտ։ Բացեցի թվաբանության գիրքը։ Նոր տետր հանեցի։ Վերցրեցի մատիտը։

Հետևյալ օրը դասերից հետո տուն վերադառնալիս անչափ ուրախ էի։ Ինչու՞։ Ուզում էի հայրիկի հետ խոսել, ներողություն խնդրել այն ամենի համար, որ տեղի էր ունեցել գիշերը։ Ուզում էի շատ ու շատ կարևոր մի տեղեկություն հայտնել նրան։ Բայց ինչպե՞ս։ Ասենք թե հեռախոսով զանգ տվեցի։ Արդյո՞ք տեղում կլինի նա. չէ՞ որ հայրիկը միշտ խիստ զբաղված է լինում։ Այդպես էի մտածում ես, երբ նորից լսվեց հեռախոսի զանգը։ Դարձյալ երեկվա նման տագնապալի, ազդեցիկ։ Թվում էր, թե ինչ-որ չափազանց կարևոր մի իրադարձություն է տեղի ունեցել, այդ մասին ուզում են մեզ էլ տեղյակ պահել։ Վազեցի, հասա հեռախոսի մոտ, վերցրի լսափողը։
— Ալլո։

# ԷԼԴԱՐԻ



*ԻՍՐԱՖԻԼ ՄԱՄԵԴՈՎ*

Բահարլիում փեշերն իրար կպած երկու սար կա։ Մեկը բարձր, մյուսը՝ ցածր։ Մեկի ստվերը՝ մյուսի ճակատին, մեկի գլուխը՝ մյուսի կրծքին։ Ցածր սարի լանջի ավանից սկսվող ճանապարհը լայն գոտու նըման փաթաթվելով բարձր սարի կրծքին՝ անցնում գնում է դեպի հարևան գյուղերը։ Երթևեկությունը չի դադարում այստեղ ո՛չ ձմռան բքին ու սառնամանիքին, ո՛չ էլ ամառվա շոգին ու տոթին։ Ավտոմեքենաների շարասյունը հարևան գյուղերի շրջակայքի հանքերից գիշեր ու ցերեկ հանքաքար է տեղափոխում ավանի հսկա կոմբինատ, որի ծխնելույզները հասնում են մինչև երկինք։

Գարուն էր։ Թարմություն ու կենսուրախություն էր բուրում հարապատ սարերից։ Ժպտում էին լանջերը, ուրախ էին մարդիկ՝ երթևեկողները, հանքափորները, կոմբինատի աշխատավորները։ Ամեն ինչ սովորական էր։ Բայց հանկարծ տագնապալի մի լուր տարածվեց։ Ասացին, որ բարձր սարի գագաթից՝ իր հավիտենական տեղից, պոկվել է մի հսկա ժայռակտոր, գլորվելով եկել ու կտրել ճանապարհը։ Մարդիկ հա-

*Նա էր։ Դարձյալ հայրիկը։*

*— Հայրիկ ջան,—ուրախ-ուրախ, ասացի ես,— համբերիր, միայն մի րոպե համբերիր։*

*Վազեցի, պայուսակիցս հանեցի թվաբանության տետրը ու նորից վերադարձա հեռախոսի մոտ.*

*— Հայրիկ ջան, նայի՛ր, ա՛յ «5» եմ ստացել, «5»։*

*Ես այնպես էի խոսում, ցույց տալիս, ասես հայրիկս և՛ լսում էր ինձ, և՛ տեսնում այն «5»-ը, որ կարմիր մատիտով գրված էր տետրում։ Այո, ես համոզված էի, որ նա տեսնում է. չէ՞ որ սա հասարակ բան չէր, այլ շատ լուրջ հարց, կարևոր խնդիր։ Թե չէ հայրիկը երեկ գիշեր Նավթային Քարերից այստեղ զանգ չէր տա, իհարկե չէր տա։*

*Ադրբեջաներենից թարգմ. Ի. ՄԱՄԵԴՈՎԸ*

# ԵՐԵԽԱՆԵՐԸ



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

վաքվեցին, չարչարվեցին։ Բայց ո՛չ նրանց չարչարանքը արդյունք տվեց, ոչ էլ օգնության եկած բուլդոզերն ու ամբարձիչ մեքենան։ Ծանր ու թեթև արեցին, երկար ու բարակ մտածեցին, ի վերջո կարճ կտրեցին.

— Պայթեցնել է պետք.

— Էլդարի գործն է սա։

— Ասացեք, թող հանքերից այստեղ գա...

Էլդարը բարձրահասակ էր, ամրակազմ, արագաշարժ։ Բոլորի կողմից սիրված, հարգված։ Ժպտալ չէր սիրում, խոսելու մեջ անչափ ժլատ էր։ Դրա համար էլ «ուրբաթախոս» էին ասում նրան։ Այս անգամ էլ դեպքի վայրն հասնելուն պես իր սովորության համաձայն առանց որևէ մի բան խոսելու, առանց ժամանակ կորցնելու, նա իսկույն գործի անցավ։ Ծակեց հսկա ժայռի ամուր կուրծքը, այնտեղ պայթուցիկ նյութ լցրեց և կտրուկ ասաց.

— Դե ի՞նչ եք սպասում, հեռացեք, թե չէ...

Հեռացան ու գնացին մարդիկ։ Պատրույգը կրակ տալուց հետո հեռացավ նաև Էլդարը։ Թաքստոցից լուռ դիտում էր շրջակայքը։ Քնքուշ ու զով էր գարնան շունչը։ Մեղմ, մտերիմ քամի էր փչում։ Սևաչյա ալ կակաչները շարունակ գլուխ էին խոնարհում մերթ աջ, մերթ ձախ։ Արցունքի նման վճիտ լեռնային ջրերը օձի պես պտտվում, նրբերանգ ծաղիկների արանքից անցնելով իրենց համար ճանապարհ էին հարթում և հոսում գնում էին լանջն ի վար։ Ամեն ինչ լավ էր, ներդաշնակ, հաճելի։ Հիացած էր Էլդարը։ Անհոգ աչքերով նայում էր առատաձեռն բնության այդ հմայքին։

Հանկարծ նա վեր թռավ տեղից, բարձրացավ թաթերի վրա, երկու ձեռքերով սրբելով աչքերը, առանց շունչ քաշելու, ուշադրությամբ նայեց առաջ։ Ոչ մի բանից տեղեկություն չունեցող մի խումբ վկկապավորներ աշխույժ կրույցի էին բռնվել իրար հետ և իրենց հավաքածուների համար նմուշներ էին փնտրում։ Շողշողում էին նրանց ալ վկկապները, ծովի

ալիքների պես խայտում էին կարմիր կակաչները: Ասես բարձր սարի լանջերը ամբողջովին արյունով էին ներկված: Մտածելու, որոշում կայացնելու ժամանակ չկար: Էլդարը խկույն նայեց ժամացույցին: Ընդամենը մեկ րոպե էր մնացել ահավոր պայթեցմանը: Էլդարի կրծքի տակ ամեն բան փոթորկվեց, կյանքի քառասուն տարիների ընթացքում նա առաջին անգամ էր, որ այսպես պարզ լսում էր իր սրտի տրոփյունը: Տագնապալի, անհանգիստ այս տրոփյունը խոսում, խորհրդակցում էր Էլդարի հետ: Եվ նա ունկնդրեց իր սրտի ձայնին: Մի ակնթարթում դուրս թռավ թաքստոցից ու իրեն նետեց այրվող պատրույգի վրա... Ապա հանգիստ վեր կացավ, թևով սրբեց ճակատի քրտինքը, խորը շունչ քաշեց և պայծառ աչքերով նայեց իր առջև լուռ կանգնած մանուկներին ու մեկ էլ՝ վայրկենաչափի սլաքին: Ելույթի պատրաստվող մարդկանց նման Էլդարը բարձրացրեց գլուխը: Բայց ոչինչ, այո՛, ոչինչ չասաց: Վերջին տարիների ընթացքում առաջին անգամ այդպես սրտանց ժպտացող շրթունքներից միայն մի խոսք լսվեց.

— Հինգ վայրկյան:

Հինգ վայրկյան, ընդամենը հինգ վայրկյան եթե ուշանար, ոչ ինքը, ոչ էլ երեխաները կմնային...

— Էլդարն հիանալի մարդ է, ափսոս, որ երեխաներ չունի...

Այսպես էին խոսում այդ օրը ավանում:

Իսկ երեկոյան Էլդարի կինը՝ Խալիդան, երբ պատշգամբում գործ էր անում, հանկարծ լսեց.

— Եկա՛ն, Էլդարի երեխաներն եկա՛ն:

Նա չհավատաց իր ականջներին, արձանի նման մնաց կանգնած և երբ նայեց ցածր սարի կողմը, տեսավ, որ մի խումբ երեխաներ իրենց տան կողմն են գալիս: Իսկ հարևանները բացականչում էին.

— Եկա՛ն... Էլդարի երեխաներն եկա՛ն:

Այս օրվանից ավանում չորրորդ դասարանի երեխաներին այդպես էլ անվանում էին՝ Էլդարի երեխաները:



## Քեզ համար, Նգուեն

Նգուեն Նգոկը ապրում էր Հանոյից ոչ հեռու, մի փոքրիկ գյուղում: Նրա տասը տարին լրանալուց դեռ երկու օր պակաս էր, երբ սպանվեց:

Կեսօրին, երբ բոլոր մեծահասակները աշխատում էին դաշտում, երկնքում երևացին ամերիկական ինքնաթիռները: Թափվեցին ռումբերը, հրդեհով բռնկվեցին տները:

Նգուենը բռնեց փոքրիկ եղբոր ձեռքը և սլացավ դեպի թաքստոցը, որտեղ անվտանգ էր: Հանկարծ պայթյունների ճարճատյունի միջից նա լսեց մանկան վախեցած լացի ձայն:

Նգուենը փոքր եղբորը պատվիրեց տեղից չշարժվել, իսկ ինքը զգուշությամբ դուրս սողաց թաքստոցից: Տներից մեկում դեսուդեն էին նետվում վախեցած փոքրիկները: Նգուենը նետվեց առաջ, բայց ուժեղ պայթյունը նրան մի կողմ շպրտեց: Տղան դժվարությամբ ոտքի կանգնեց և վազեց բոցերի միջով...

Երեք անգամ հաղթահարելով կրակի բոցերը, Նգուենը փոքրիկներից երեքին տեղափոխեց թաքստոց: Բայց այնտեղ՝ ծխի ու բոցերի մեջ, մնաց էլի մեկը: Եվ Նգուենը նորից դուրս թռավ փողոց:

Ռումբի բեկորը նրան հասավ ետդարձի ճանապարհին:

Գյուղը ռմբակոծող ամերիկական գիշատիչները օդանավակայան չվերադարձան:

Խփված ինքնաթիռի բեկորի վրա տղաները գրեցին.

«Քեզ համար, Նգուեն»:

# ԵՍ ԳՐՈՒՄ ԵՄ ՔԵԶ, ՀԱՅՐ

*ՄՈՆԻԿԱ ՎԱՐՆԵՆՍԿԱՅԱ*

*Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ*

Լեհ ժուռնալիստուհի Մոնիկա Վարնենսկայան որոշ ժամանակ եղել է ջունգլիներում՝ Հարավային Վիետնամի պարտիզանների մեջ: Նրա «Ես գրում եմ քեզ, հայր...» պատմվածքում օգտագործված են իրական փաստեր այդ խիզախ ժողովրդի կյանքից ու պայքարից:

*Սիրելի հայրիկ, ես չգիտեմ, թե երբ կստանաս*

այս նամակը: Բայց հուսով եմ, որ այն անպայման քեզ կհասնի: Մեզ մոտ, անտառում, հյուր կա հեռավոր մի երկրից, որն ընկած է աշխարհի ինչ-որ մեկ ուրիշ ծայրում: Այնտեղ հասնելու համար հարկավոր է մի քանի օր թռչել ինքնաթիռով: Ես կարծում էի, թե ինքնաթիռներից միայն ռումբեր են նետում, որոնք հրդեհում են տները և սպանում մարդկանց: Մեր երկրի մասին ինձ պատմում է մայրիկը, շատ բաներ էլ իմանում եմ մեր անտառային դպրոցում: Բայց, այնուամենայնիվ, ինձ համար դժվար է պատկերացնել այնպիսի հեռավոր երկրներ, ինչպես Չինաստանն է, Սովետական Միությունը և Լեհաստանը: Եվ ինչպիսին ես դու, սիրելի հայրիկ, ես ոչ մի կերպ չեմ կարող պատկերացնել, թեև բազմաթիվ անգամ քեզ տեսել եմ փոքրիկ լուսանկարներում: Երբ մենք երեքով ապրում էինք գյուղում, մայրիկը հաճախ էր պատմում քո մասին և մեզ ցույց տալիս նկարդ: Սկզբից նկարին նայում էր միմիայն Դունգը, ես բոլորովին փոքր էի: Հետո ինձ էլ այդպիսի բախտ վիճակվեց: Մայրիկը այնպես խնամքով թաքցրեց քո լուսանկարը, որ խուզարկության ժամանակ նույնիսկ զինվորները չգտան: Իսկ հետո, արդեն անտառում, մենք հանդիպեցինք Դունգին, և մայրիկը ուզում էր նկարը նրան տալ: Բայց ավագ եղբայրս ասաց, որ քո նկարը պարտավոր է պահել ինքը՝ մայրիկը: Նա երկար նայեց քո դեմքի արտահայտությանը, կարծես ցանկանում էր ինչ-որ բան ասել քեզ:

Ես նախանձում եմ Դունգին. նա բանակում է և հիշում է քեզ: Իսկ ես քեզ միայն երազում եմ տեսնում: Երբ ես պառկում եմ քնելու, մտածում եմ քո մասին, կամաց քեզ պատմում եմ իմ մասին:

Արդեն երկու տարի է, ինչ ես ու մայրիկը ապրում ենք անտառում: Դունգը մեր գյուղի մյուս տղաների հետ միասին ավելի շուտ է գնացել պարտիզանների մոտ: Նրանց համար շատ ծանր էր կռիվը. նրանք քիչ զենք ու դեղորայք ունեին, սնունդը չէր բավարարում: Իսկ հիմա ունեն բոլոր անհրաժեշտ բաները, և մարդիկ ուրախությամբ օգնում են նրանց: Ես հաճախ եմ տեսնում, թե ինչպես մարդիկ բրնձով լի պարկեր են գաղտագողի տանում ջունգլիները:

Մեզնից յուրաքանչյուրը միշտ իր մոտ պահում է ամենաանհրաժեշտ իրերով փոքրիկ մի պարկ, որպեսզի ռմբակոծության ժամանակ վերցնի և վազի թաքստոց: Ես ինձ մոտ եմ պահում դպրոցական տետրերս և գրքերս, մայրիկի ու Դունգի լուսանկարները:

Մեր անտառային դպրոցում նույնպես կան գրքեր և տետրեր: Գրքերը հրատարակվել են հենց այստեղ, ջունգլիներում: Երբեմն հիշում եմ մեր գյուղի դպրոցը, բայց ես քիչ եմ սովորել այնտեղ. ուսուցիչներին բանտարկեցին, դասագրքերը ցաքուցրիվ արեցին: Ես հազիվ մի քիչ սովորեցի կարդալ ու գրել: Իսկ շուտով բանտարկեցին մայրիկին և ինձ էլ նրա հետ:

Այդ ժամանակ բանտարկեցին շատերին՝ հատկապես կանանց, տղամարդիկ և Դունգի նման տղաները թաքնվեցին անտառում: Նրանք գյուղ էին գալիս գաղտնի: Ես գիշերները հաճախ եմ արթնացել շշուկից և խշշոցից: Մարդիկ եկածներին բրինձ էին տալիս: Ես միշտ էլ հույս եմ ունեցել, որ երբևիցե կգա և իմ ավագ եղբայրը՝ Դունգը: Քանի-քանի անգամ կեսգիշերին բացել եմ աչքերս, նայել, բայց նրան չեմ տեսել: Մայրիկը ծածկում էր լամպի լույսը և ասում՝ քնիր: Իսկ ցերեկը նախազգուշացնում էր. «Հիշի՛ր, անտառից եկած մարդկանց մասին չի կարելի ոչ ոքի ոչինչ ասել: Մենք պետք է օգնենք մեր եղբայրներին...»

Օգնել ենք ոչ միայն մեր գյուղի, այլև ուրիշ գյուղերի պարտիզաններին: Դրա համար էլ բանտարկեցին մայրիկին, ինձ էլ նրա հետ և շատ մարդկանց ուրիշ գյուղերից:

Գիշերը շրջապատեցին գյուղը: Խուզարկեցին և մեզ: Տակնուվրա արեցին ամեն ինչ: Գոռացին մայրիկի վրա. «Կոմունիստական ես»: Ասացին, որ նա օգնում է պարտիզաններին, սպառնացին սպանել: Նրանք իրոք կարող էին սպանել մայրիկին: Երբ մեզ մոտ խուզարկում էին, բոլորովին մոտիկ լսվեց կրակոցի ձայն: Հետո ինչ-որ մեկը սկսեց բարձր ձայնով լաց լինել: Երբ մեզ դուրս բերեցին, ես տեսա մեր հին հարևան Խանչին, որը շատ լավ էր հիշում քեզ: Նա մեռած էր, թևերը տարածած ընկել էր իր տան մուտքի մոտ: Նրա կինը ողբում էր դիակի վրա:

Ես այն ժամանակ նրանցից շատ վախեցա: Բայց միաժամանակ և ատեցի նրանց: Ափսոսացի, որ զենք չունեմ, թե չէ նրանց թույլ չէի տա սպառնալ մայրիկին: Սկզբում նրանք միայն բղավեցին մեզ վրա: Իսկ հետո քաղաքում, բանտում, ծեծեցին: Հենց այդ ժամանակ էլ առաջին անգամ մոտիկից տեսա ամերիկացիներին: Նրանք ոչ թե սպիտակ էին, այլ կարմիր: Հավանաբար, դա նրանից է, որ շատ են ուտում և երբեք քաղցած չեն մնում: Նրանք մեզ վրա նայում էին անտարբեր, ծխում ու խոսում էին իրենց լեզվով: Ես միայն մի բառ հասկացա. «Վիետնամ»: Հետո սկսեցին մեզ հարցաքննել: Սկզբում՝ մայրիկին, հետո՝ ինձ: Թե ինչի մասին էին նրան հարցնում, ես այն ժամանակ չիմացա, իսկ հիմա գիտեմ: Նրան հարցրին, թե որտեղ է թաքնված Դունգը, արդյոք նա կուսակցական չէ՞, որտեղ են գտնվում պարտիզանները: Նրանք մայրիկին ծեծեցին:

Երբ նրանք հասկացան, որ ես ոչ ոքի չեմ մատնի, ինձ տարան մյուս սենյակը: Այնտեղ ես տեսա

*մայրիկին: Դեմքը ջարդված, մազերը գզգզված: Ես նետվեցի դեպի նա. «Մայրի՛կ: Սիրելի մայրի՛կ, նրանք այդ ի՞նչ օրի են գցել քեզ»: Սեղանի հետևում նստած էր շրթունքը կախ ընկած մի հաստափոր ամերիկացի: Նա ինչ-որ բան ասաց ինձ հարցաքննողներին, և նրանք սկսեցին ինձ ջարդել մայրիկի աչքի առաջ: Ամեն րոպե հարցնում էին մայրիկին՝ հայտնելո՞ւ է իրենց որևէ բան, թե՞ ոչ: Նրանք ասում էին, որ չեն դադարեցնի ծեծը, քանի դեռ մայրիկը չի խոստովանի, որ օգնել է կոմունիստներին: «Ես ոչինչ չգիտեմ և ոչինչ չեմ ասի»,— բղավեցի ես ամբողջ ձայնով: Այն ժամանակ նրանք սկսեցին ծեծել մայրիկին և ասացին, որ ծեծը չեն դադարեցնի, մինչև ես չխոստովանեմ, որ պարտիզաններին տեսել եմ:*

*Այդ մասին ես պարտավոր եմ քեզ պատմել, հայրիկ: Բայց դու մեզ համար մի՛ անհանգստանա: Մենք ամեն ինչ տարանք, թեև մեզ էլի շատ անգամ ծեծեցին: Ես ու մայրիկը չորս ամիս անցկացրինք բանտում: Այնտեղ շատ կանայք էին տանջվում, մի քանիսը երեխաներով էին: Բոլորն էլ մեղադրվում էին պարտիզաններին օգնելու մեջ: Բայց ոչ ոք ոչինչ չասաց: Վերջապես մեզ ազատեցին:*

*Մենք վերադարձանք գյուղ: Մայրիկը երկար պառկեց, նրան խնամում էին բոլոր հարևանները: Իսկ մի անգամ գիշերը անտառից մարդիկ եկան ու ասացին, որ ավելի լավ է հեռանանք անտառ: Եվ մենք գնացինք:*

*Այդպես մենք հայտնվեցինք պարտիզանների մոտ: Երբ մայրիկն առողջացավ, սկսեց աշխատել հենց նույն հիվանդանոցում, որտեղ բուժվել էր: Այժմ նա գթության քույր է, խնամում է ուրիշ հիվանդների: Իսկ ես սովորում եմ անտառային դպրոցում: Ես արագ ընտելացա անտառի կյանքին: Այստեղ հարկավոր է ուշադիր լինել. շատ օձեր և կարիճներ կան: Մենք քնում ենք ցանցաճոճերում: Ես շատ բարեկամներ և ընկերուհիներ ունեմ: Շատերի հայրերն ու մայրերն էլ պարտիզաններ են, բայց նրանք մեզնից հեռու են: Մի քանիսն էլ ո՛չ հայր ունեն, ո՛չ մայր: Կան և այնպիսիները, որոնք առհասարակ ոչինչ չգիտեն իրենց հարազատների մասին:*

*Ես արդեն շատ գրեցի քեզ, սիրելի հայրիկ, բայց և այնպես կարող եմ էլի գրել ու գրել: Ինչ լավ եղավ, որ մի քանի երեկո ինձ ազատեցին գործերից, որպեսզի կարողանամ գրել այս նամակը: Մեզ մոտ խիստ կարգապահություն կա: Ամեն երեկո ժամը ինընին ազդանշան է տրվում, և բոլորը պետք է լինեն իրենց տեղերում, պառկեն քնելու:*

*Ուսուցիչները մեզ պատմում են, որ Հյուսիսի քաղաքներում քարից շինած մեծ դպրոցներ կան: Ես նույնիսկ չեմ հավատում, որ կարող են այդպիսի դպրոցներ լինել:*

*Մեկ անգամ էլ նայեցի գրածիս: Ես այնպես եմ ուզում հավատալ, որ այս նամակը կընկնի քո ձեռքը... Եթե ես նման լինեի ծառի տերևի, կթռչեի քեզ մոտ, կգտնեի քեզ, հայրիկ: Ինչ-որ մի անգամ դու գրել էիր. «Ինձ շատ է ուրախացնում, որ Դունգը կարդում և գրում է»: Իսկ գիտե՞ս արդյոք, որ քո կրտսեր տղան արդեն սովորում է երրորդ դասարանում:*

*Ես շատ եմ ուզում, որ դու հպարտանաս Դունգով և ինձնով նույնպես, ինչպես մենք ենք հպարտանում քեզնով, հայրիկ: Եվ իմացիր, որ մենք էլ պայքարի մասնակիցներ ենք: Եթե մի քիչ մեծ լինեի, ես էլ, ինչպես իմ եղբայրը, ավտոմատ կվերցնեի ձեռքս, կխփեի թշնամուն, կքշեի նրան մեր հողից: Բայց ինձ ասում են. եթե ես լավ սովորեմ, աշխատեմ և օգնեմ մեծերին, դա հավասար է նրան, որ ես խփում եմ թշնամուն:*

*Ահա և այն ամենը, ինչի մասին ցանկանում էի պատմել: Եվ էլի մի ուրիշ բան, ամենագլխավորը. ԵՍ ՔԵԶ ՇԱՏ ԵՄ ՍԻՐՈՒՄ, ՀԱՅՐԻԿ:*

Ռուսերենից թարգմ. Ս. ՍԱՀԱԿՅԱՆԸ





# ԹՈՒՄԻԿԸ



ԿԱՐԵՆ Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

Նկ. ԱՐՄԻՆԵ ԿԱԼԵՆՑԻ

Անշտապ քայլերով մոտեցա սրահում գտնվող միակ սեղանին, որի վրա պառկած էր ճերմակ սավանով ծածկված Թումիկը: Շուրջս կանգնած ռոբոտներից մեկը պատրաստակամորեն հենց օդում որսաց սավանն ու խնամքով ծալելով, դրեց պահարանը: Ես կռացա Թումիկի վրա:

— Քիթը չի ստացվել,— ասացի ես.— Սա մի՞թե քիթ է:

Ռոբոտներից մեկը թղթապանակը բացելով սկըսեց ինչ-որ բան որոնել: Ես հասկացա, թե նա ինչ է որոնում և առանց ուշադրություն դարձնելու, շարունակեցի.

— Իսկ մազե՞րը... Փափուկ են. դա լավ է: Բայց գու՞յնը: Դուք տեսե՞լ եք, որ մարդու մազերը մոխրագույն լինեն:

— Մենք պատրաստել ենք նախագծի համապատասխան,— ասաց ռոբոտը, և թղթապանակից հանելով Թումիկի նախագիծը, պարզեց ինձ:

Դեմքիս դժգոհ արտահայտությամբ նայեցի նախագծին, հետո՝ Թումիկին: Ռոբոտն, իհարկե, ճիշտ էր: Թումիկի քիթը և՛ նախագծում, և՛ իրականում սովորական քիթ էր: Մազերն էլ սովորական էին: Ոտքերն էլ: Ընդհանրապես, մաքուր աշխատանք էր: Ես դրանում համոզված էի նախքան այս սրահը մտնելս: Բայց այսպես բծախընդիր էի ուզում ձևանալ, քանի որ ականջիս շըշուկներ էին հասել, որ աշխատանքներն ընդունում են առանց դիտողությունների: Եվ հիմա կարևորն այն էր, որ դիտողություն եմ անում. տեղին լինեն դրանք, թե ոչ՝ նշանակություն չունի: Իսկ շշուկները կդադարեն:

Այնուամենայնիվ, որոշեցի դիրքերս չզիջել.

— Հետո ի՞նչ: Կարելի էր ավելի մաքուր աշխատել: Այնպես, որ քիթը քթի նման լիներ, մազերն էլ մարդավարի գույն ունենային: Ի՞նչ արած,— հառաչեցի ես: Գործարանը չի սպասի մինչև նոր փորձանմուշ պատրաստենք: Լուսնից էլ անդադար շտապեցնում են:

Շուրջս կանգնած ռոբոտները երևի թեթևացած շունչ կքաշեին, եթե միայն շնչելու հնարավորություն կամ անհրաժեշտություն ունենային: Վերջին հաշվով մեքենայից պահանջվում է այն, ինչ նպատակով կառուցել են, իսկ շնչելը կարևոր չէ: Ինչպես նաև ուտելը: Եթե հանկարծ լսեք, թե որևէ մեկն ասում է. «Ռոբոտները ճաշարան են գնացել», ապա իմացեք, որ դա ուղղակի փոխաբերական իմաստ ունի: Նրանց «ճաշարանը» այն սենյակն է, ուր նրանք լիցքավորվում են էլեկտրական վանդակներից: Ռոբոտների հետ շփվող մարդկանցից շատերը, և հատկապես երեխաները, ոչ մի կերպ չեն ուզում հասկանալ այս պարզ բանը: Եվ դրանից տուժում են մեծ մասամբ ռոբոտ-դայակները: Երբ նրանք փոքրիկներին ստիպում են ճաշ ուտել, սրանք էլ իրենց հերթին պահանջում են, որ ռոբոտ-դայակը մի գդալ ինքն ուտի, մյուսը՝ իրենք: Եվ հենց որ ռոբոտ-դայակը կատարում է այդ պահանջը, կարճ միացման հետևանքով անմիջապես դուրս է գալիս շարքից, և շտապ օգնության մեքենան էլ նրան տանում է վերանորոգման: Մի խոսքով, շատ զզվելի պատմություն է:

— Լիցքավորումն սկսե՞նք,— հարցրեց իմ կողքին կանգնած ռոբոտը:

— Ի՞նչ արած,— ասացի ես: — Սկսենք:

Մոտեցա ղեկավարման վահանակին ու սեղմեցի կապույտ կոճակը: Հետո սկսեցի ուշադիր հետևել չափիչ գործիքների ցուցմունքներին:

...Առաջներում ես անձամբ մասնակցում էի սև աշխատանքներին: Հետո գործն ընկավ հունի մեջ, և հիմա ես ներկա եմ լինում միայն լիցքավորման ժամանակ: Ավելին. ինքս անձամբ եմ կատարում այդ պատասխանատու գործը: Լիցքավորման ժամանակ ոչ միայն էլեկտրական էներգիայի առաջին բաժինն է ստանում ռոբոտը, այլև այն վիթխարի գիտելիքները, որոնք նախատեսված են տվյալ տեսակի համար: Թումիկը մեր աշխատանոցում ստեղծված հերթական ռոբոտն էր: Լուսնի բնակիչների պատվերը: Նրանք պահանջել էին, որ իրենց ծառայող ռոբոտների հին տեսակները փոխարինվեն նոր տեսակներով: Հըների արտաքինը մի բանի նման չէ: Գլուխն՝ առանց մազի, քթի ու բերանի, աչքերն՝ առանց կոպերի. մի խոսքով, իսկական այլանդակներ: Մարդկանց պահանջն իրավացի էր, երեխաներինը՝ նույնպես: Երեխաները դժվարությամբ էին վարժվում այդ այլանդակներին:

Աչքիս ծայրով նայեցի Թումիկին։

Չէ... մաքուր աշխատանք է։ Հենց որ լիցքավորումն ավարտվի, նրան ոչ ոք չի տարբերի սովորական մարդուց։

Լսվեց ցածրաձայն մի բզզոց։ Դա ազդանշան էր այն մասին, որ լիցքավորումն արդեն պետք է դադարեցնել։ Աճապարեցի այս անգամ սեղմել կարմիր կոճակը։ Երբեք չի կարելի շեղվել նախագծով ծրագրված տվյալներից։ Այլապես ռոբոտի մոտ կստացվի հավասարակշռության խախտում։ Իսկ մարդիկ այդպիսի ռոբոտներին ուղղակի ոչնչացնում են, որովհետև նրանց հավասարակշռությունը և ոչ մի հոգեկան հիվանդանոց չի կարողանա վերականգնել։



Թումիկն արդեն աչքերը բացել և հետաքրքրությամբ նայում էր առաստաղից կախված ջահին։

— Ինչպե՞ս ես, Թումիկ,— առանց հապաղելու, հարցրեցի ես։

Նա դարձավ իմ կողմն ու ժպտաց։

Չէ, ռոբոտները մաքուր աշխատանք են կատարել։ Այդպիսի ժպիտ ես տեսել եմ միայն մարդկանց դեմքին։ Եվ Թումիկն առաջին ռոբոտն էր, որ կարող էր նաև ժպտալ։ Լավ էլ ժպտում էր։ Ուղղակի զմայլելի մի ժպիտ էր դա։

— Ոչինչ,— պատասխանեց նա։

— Իջիր սեղանից,— ասացի ես։

Թումիկը վստահորեն իջավ սեղանից ու կանգնեց իմ դիմաց։ Նա տասնչորս-տասնհինգ տարեկան պատանու արտաքին ուներ, համակրելի էր ու խելացի։ Ես գիտեմ, որ նա խելացի էր, որովհետև գիտելիքների անսպառ պաշարով էր լիցքավորված։ Մի խոսքով, իմ առաջին տպավորությունն այն էր, որ Թումիկին սիրելու են Լուսնի բոլոր բնակիչները, երեխաներից սկսած մինչև մեծերը։

— Գնանք իմ առանձնասենյակը, Թումիկ,— ասացի ես։— Ցտեսություն, ռոբոտներ,— արդեն դռան մոտից հրաժեշտ տվեցի աշխատակիցներիս, ու նրանք միաձայն պատասխանեցին.

— Ցտեսություն։

Ես ու Թումիկը անցանք երկար միջանցքով մինչև մյուս ծայրը։ Հետո վերելակով բարձրացանք տասնյոթերորդ հարկ, որտեղ և գտնվում էր իմ առանձնասենյակը։

— Նստիր,— ասացի նրան, ցույց տալով գահավորակը։

Թումիկը նստեց։ Ես կանգնել էի նրա դիմաց։ Մի քիչ շփոթված էի։ Ախր նա շատ նման էր մարդու։ Եվ ես ոչ մի կերպ չէի կարողանում հաղթահարել այդ տպավորությունս ու սկսել շատ սովորական հարցազրույցը, որի ընթացքում որոշում էի, թե որքանով է ռոբոտը ճիշտ լիցքավորում ստացել։

— Թումիկ, սիրելիս... մենք, ինչպես ասեմ... մի փոքր պետք է զրուցենք...

— Խնդրեմ,— ասաց նա ոտքը ոտքի վրա դնելով։ Հետո արձակեց վերնաշապիկի վերին կոճակը ու դարձյալ ժպտաց։

Ի դեպ, ռոբոտը կարող է ժամերով, առանց հոգնելու, կանգնած մնալ, իսկ նստելիս էլ բնավ պարտադիր չէ, որ նա ոտքը ոտքին դնի։ Ռոբոտը չի շնչում, և նրա համար ոչ մի անհրաժեշտություն չկա վերնաշապիկի վերին կոճակն արձակել։ Ժպիտը ևս բոլորովին պարտադիր չէ ռոբոտների համար։ Սակայն այսքանն էլ բավական էր, որ ես կռահեի. Թումիկ-ռոբոտը շարժուձևի լիցքավորումը շատ ճիշտ է ստացել։

— Ուրեմն...— ես որոշեցի այլևս չնայել նրան, որպեսզի չշփոթվեմ։ — Դու գիտե՞ս, թե ով ես։

— Թումիկը։

— Շատ լավ։ Ե՞րբ ես ծնվել։

— Երկու հազար երեսունվեց թվականին։

Ճիշտ պատասխանեց։ Թեև հիմա երկու հազար հիսուն թվականն է, բայց չէ՞ որ նա տասնչորս տարեկանի արտաքին ուներ։

— Ապրես։ Իսկ հիմա ասա, ո՞վ էր Ալեքսանդր Մակեդոնացին։

— Հույն զորավար։ Միտք ուներ նվաճել ամբողջ աշխարհը,— ասաց Թումիկը, և շատ տեղին ավելացրեց. — Այսինքն աշխարհի այնքան մասը, որ հայտնի էր հին հույներին։

— Ճիշտ է։ Իսկ ո՞վ էր Ադամ Միցկևիչը։

— Լեհ բանաստեղծ։

— Իսկ Թորոս Ռոսլինի մասի՞ն ինչ կասես։

— Հայ մանրանկարիչ էր։

Ընդհանուր առմամբ Թումիկը քննություն բռնում էր։ Ես շարունակեցի հարցափորձը.

— Թումիկ, կարո՞ղ ես ասել, թե ինչ բան է գեղեցկությունը։ Ավելի ճիշտ, գեղեցիկի տակ առաջին հերթին ի՞նչ ես հասկանում։

— Միլոսյան Վեներայի արձանը, որը հազար ութ հարյուր քսան թվականին հայտնաբերեց Միլոս կղզու բնակիչ Յորգոսը։

Այսպիսի սքանչելի պատասխանից հետո ես պետք է անցնեի գիտության ու տեխնիկայի բնագավառին։ Բայց հիմարություն ունեցա մի հարց ևս տալու։ Մինչև հիմա ես չեմ կարողանում ինձ ներել։ Ես երբեք այդքան հիմար դրության մեջ չէի ընկել, ինչպես այդ հարցը տալուց հետո։

— Թումիկ, իսկ տգեղության, այլանդակության տակ դու ի՞նչ ես պատկերացնում։

Թումիկը ժպտաց իր հիասքանչ ժպիտով և առանց անհարմար զգալու պատասխանեց.

— Քեզ։

— Ի՞նչ...

— Քեզ։

Ես... ես ապշեցի, վախեցա, շփոթվեցի, կատաղեցի, չգիտեմ, թե ինչ եղա։ Թումիկն իրավունք չուներ, նա չպետք է այդպես պատասխաներ։ Նա այդպիսի լիցքավորում չէր ստացել։ Ես թուլացած նստեցի նրա դիմաց, բազկաթոռին։

— Թումիկ,— անօգնական ասացի ես։ — Թումիկ, այդ ինչեր ես ասում։

— Ասում եմ, որ դու այլանդակ ես։ Քո գլխին մազ չկա, քիթ ու բերան չունես, աչքերդ առանց կոպերի են... Ոնց որ մարդու ծաղրանկար լինես։

— Թումի՜կ...

— Դու երեսնական թվականներին թողարկված ռոբոտներից ես,— առանց այլայլվելու շարունակեց Թումիկը։ — Եվ չեմ հասկանում, թե ինչու ես այդ տխմար հարցերն ինձ տալիս։

— Ես... ես ռոբոտ չեմ, Թումիկ,— ասացի ես ու արդեն վճռեցի, որ Թումիկին պետք է ոչնչացնել. Նրան ոչ մի հոգեբուժական հիվանդանոցում չեն բուժի։

—Իսկ դու քեզ հայելու մեջ երբևէ տեսե՞լ ես,— հարցրեց նա։

— Հայելի՞... Իսկ ի՞նչ բան է դա։

— Չգիտես։ Իհարկե, դու ռոբոտ ես։

— Բայց ես շնչում եմ, ուտում եմ, ժպտում եմ... Ռոբոտները ո՛չ շնչում են, ո՛չ ուտում են, և ո՛չ էլ ժպտում։

— Է՜հ,— ծիծաղեց Թումիկը,— մարդիկ քեզ խաբել են։ Նրանք քեզ այնպես են լիցքավորել, որ դու կարծում ես, ուղղակի համոզված ես, թե իսկական մարդ ես։ Իհարկե, իհարկե, սիրելիս... Մարդիկ խաբել են քեզ։

— Իսկ դու... դու՞ ինչ ես,— մոռանալով հարցազրույցի բոլոր կանոնները, գոչեցի ես։

— Ե՞ս... Թումիկն եմ։ Ռոբոտ եմ, որը նախատեսված է Լուսնի բնակիչների համար։

— Տեսնու՞մ ես,— ուրախացա ես։ — Հիմա տեսնու՞մ ես, որ դու ռոբոտ ես, իսկ ես՝ մարդ։ Դու գիտես, որ ռոբոտ ես, իսկ ես գիտեմ, որ մարդ եմ։ Ինչու՞, օրինակ, մարդիկ քեզ չեն խաբել, իսկ ինձ խաբել են։ Չէ՞ որ ոչ մի տրամաբանություն չկա այստեղ։

— Բայց ես վերջին, ամենավերջին տեսակն եմ։ Կատարելագործված տեսակը։ Ճի՞շտ է։ Հենց քիչ առաջ եմ ծնվել, եթե կարելի է այդպես ասել։

Ես ապշեցի։

— Քիչ առաջ դու չէի՞ր ասողը, որ տասնչորս տարեկան ես։

— Այո, մարդկանց համար ես տասնչորս տարեկան եմ։ Այդպես եմ ներկայանալու Լուսնի վրա ապրող գաղութականներին։ Իսկ քեզ կարող եմ ասել իսկությունը, որովհետև դու ամենասովորականից էլ սովորական մի ռոբոտ ես։

Եվ Թումիկը քրքջաց։

Ես մտածեցի, թե որքան բնական է ստացվում նրա քրքիջը։

Եվ ինչու՞ են մարդիկ թյուրիմացության մեջ գցել ինձ։

Ինչու՞։





# ՋՈՆԻ ոսկեգույն ԿՈՃԱԿ

ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ

Նկ. ՎԱԶԻՆ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Զինվորները կանգնել էին ամոթահար, գլուխները կախ, ձեռքները շալվարներին։

Թովմասը դիմեց նրանց.

— Այժմ դուք ազատ եք։ Շատ մեղքեր եք գործել ժողովրդի դեմ, բայց ժողովուրդը մեծահոգի է։ Գնացեք ուր ուզում եք։ Իսկ թե ցանկացողներ կլինեն միանալ մեզ, սիրով կընդունենք։ Էգուց պետք է վերցնենք պալատը ու Թոբիլ Առաջինին կանգնեցնենք ժողովրդի դատաստանի առաջ։ Թող նա պատասխան տա այն բոլոր չարիքների համար, որ պատճառել է մեզ ու մեր երեխաներին։

Զինվորների մեծ մասը, իհարկե, մնաց։ Դե նրանք իրենք էլ հասարակ ժողովրդից էին, որոնց խաբելով-խաբխբելով հանել էին իրենց ծնողների ու որդիների դեմ։

Օրվա մնացած մասն անցավ նախապատրաստությունների մեջ։ Թովմասը և դարբին Գոտֆրիդը պատվիրեցին մեկական կոճակ տալ բոլոր նրանց, ովքեր էգուց մասնակցելու են պալատի գրոհին։

— Մի-մի կոճակ կարել շալվարներին, որպեսզի ձեռքերն ազատ լինեն։

Այդ րոպեին երևացին Քելլերը, Հանսը, Տիգրանըն ու Աշոտը՝ փշտովները խրած գոտիկներին։

— Կեցցե՛ք, տղաներ, դիպուկ հրաձիգներ եք,— գոչեց Թովմասը։ — Է՛յ, մի-մի հրացան տվեք այս կտրիճներին։

---

Սկիզբը՝ «Պիոներ» 1966 թ. № № 9—12 ,1967 թ. №№ 1, 2, 3

# ՇՏԱՊԵԼ ԷՐ

ՄԱՐԻԱ ՄԻՐԶԱԲԵԿՈՎԱ



Այս առավոտ մեր Միսակը
Շտապել էր, շա՜տ շտապել.
Տանն էր թողել պայուսակը,
Կոշիկի թելն էլ չէր կապել։
Թելն ընկել էր ոտքերի տակ,
Վար էր ընկել տղան ճամփին.
Չէր խղճացել քարը նրան,
Կապույտ խալ էր թողել ճակտին։
Դասարանն էր խեղճը կորցրել,
Փնտրել մինչև ժամի տասը.
Դասարանն էլ մինչև գտել,
Վերջացել էր արդեն դասը։

Թարգմ. Ս. ՄԿՐՏՉՅԱՆԸ

# ԽՈՊՈՊԻԿ



ԱՐՇԱՎԻՐ ԴԱՐԲՆԻ

Մի կողմ թողած
Բանավորը, գրավորը,
Հայելու մոտ պտտվում է
Ամբողջ օրը։
Հարդարում է ա՛յս խոպոպը,
Ա՛յն խոպոպը,
Կամ մազերը կատար անում,
Ոնց... հոպոպը։
Դես է ծռվում,
Դեն է ծռվում,
Եվ ինքն իր հետ
Թաքուն կռվում։
Ուսն է ծռում,
Շարժում թևը.
— Չէ, չէ, լավ չէ,
Փոխեմ ձևը։

Կռվողներին բաժանեցին ջոկատների ու հրամանատարներ նշանակեցին։ Ջոկատները մտնում էին երկու զորամասի մեջ, որոնցից մեկի ղեկավարը Թովմասն էր, մյուսինը՝ դարբին Գոտֆրիդը։ Հրամանատարները հավաքվեցին մի տեղ ու խորհուրդ արին վաղվա կռվի մասին։ Հետո ցրվեցին, որ մի քիչ հանգստանան։

Այդ գիշեր մարդ չքնեց։ Բոլորն անհամբեր սպասում էին լույսը բացվելուն, որ գնան պալատի վրա։

Թորիլ Առաջինը կատաղել էր։ Այնքան լինի, որ մի քանի երեխա ու անկոճակ վարտիքավորներ փախուստի մատնեն ու գերի վերցնեն թագավորական գվարդիայի ընտիր զինվորների՜ն։ Ամոթ և խայտառակություն։ Հապա այն դանդալոշ դահճապետը... Մի շան լակոտ շալվարը վրայից հանում է ու ցած տապալում... Ախր սա ծաղր ու ծանակ է մեր թագավորական մեծության հասցեին։ Այնքան է կերել ու լցվել, որ շարժվել չի կարողանում։ Գլխատել, որ խելքը գլուխը գա...

Ոչ ոք, իհարկե, չհամարձակվեց ասել, որ գլխատելուց հետո էլ ի՞նչ խելքը գլուխը գա։ Թագավորը շանթ ու կայծակ էր թափում ու հարազատ մորն էլ չէր խնայի, թե որ այդ րոպեին ձեռքն ընկներ, ուր մնաց ուրիշներին։

Նա բարկացած ճառ ասաց, էնպես բարկացած, որ բեղը ոզնու փշերի պես ցից-ցից կանգնեց։

— Հայվաննե՛ր,—ասաց,—էշե՛ր, հացս ուտում եք, մարդավարի ծառայեք։ Թե չէ պալատից դուրս կանեմ, սոված կսատկեք...

Պալատականները շատ վախեցան։ Թորիլ թագավորը հավատ չուներ, մեկ էլ տեսար՝ ասածն արեց։ Էն ժամանակ, իսկապես, ի՞նչ կլիներ նրանց վիճակը։ Ու՞ր գնային, ո՞ր մեծավորի դուռը թակեին...

— Ամա՜ն, թագավորն ապրած կենա,—աղաչեց մի ծեր պալատական,—քո բախտն ենք ընկել, ինչ կուզես՝ հրամայիր, մենակ պալատից դուրս մի՛ արա։

— Կորե՛ք այստեղից,—գոռաց թագավորը.— թողեք հանգիստ մտածեմ։

Բոլորը լեղաճաք դուրս թափվեցին ու մտան ծակուծուկերը։

## ԳԼՈՒԽ ՎԵՑԵՐՈՐԴ

Առավոտ ծեգին ժողովուրդը պալատը պաշարեց։ Չորս կողմից փայտե ելարաններ դրին պատերին, և զինվորներն սկսեցին իրար հետևից վեր բարձրանալ։ Պալատի պաշտպանները չէին շտապում։ Հենց որ զինվորները հավասարվեցին պարսպին, վերևից վառած ձյութ թափեցին նրանց գլխներին։ Զինվորներն սկսեցին ցած գլորվել ելարաններից։ Ցնծության աղաղակն անցավ պարսպի մի ծայրից մյուսը։ Որոտացին աշտարակների թնդանոթները, ճայթեցին հրացանները, և ժողովուրդը կպավ գետնին։ Փոխհրաձգությունը



## ...ԵՎ ՀՈՊՈՊԻ ՄԱՍԻՆ

Կա նոր մոդա.
Մինչև կուրծքը՝ ալիք-ալիք,
Այնուհետև՝
Ծալիկ-ծալիկ,
Նուրբ, բարալիկ։
Հիմա տեսնենք,
Թե նա ինչ է անում դասին։
Մեկ օրինակ—և ամեն ինչ
Ձեզ կպատմի հենց այդ մասին։
Նստում է լուռ,
Խոնարհ ու հեզ։
— Այսօր մի քիչ
Հիվանդ եմ ես...—
Ուսուցիչը կշտամբում է.
— Մի քիչ առաջ
Հայելու մոտ նազում էիր,
Միջանցքով մեկ՝



Եղնիկի պես վազում էիր։
Ինչո՞ւ հանկարծ
Դասարանում տկարացար.
Ասես մեկեն դու փոխվեցիր
Ու քարացար...—
Սուտ հիվանդը
Գույն է տալիս, գույն է առնում
Եվ ամոթից շիկնում, շիկնում՝
Մորի դառնում։
Մեղավոր են խոպոպները։
Ասեմ նաև՝ նման կատար
Ունենում են հոպոպները։
Ես լսել եմ ու զարմացել.
Քեզ կոչում են քույր հոպոպիկ։
Նորից կասեմ՝ դու պարզ հագիր,
Բայց թե՝ մաքուր, սիրուն, կոկիկ...



Նկ. ԲԱԳՐԱՏ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ

գնալով ուժեղանում էր։ Թովմասը հրամայեց կրակը դադարեցնել և շտապ կարգով իր մոտ հրավիրեց ջոկատի հրամանատարներին։ Խորհրդակցության լարված պահին հայտնեցին, որ չորս տղաներ ուզում են ներս գալ։

— Թողե՛ք։

Մեր չորս հերոսները կանգնեցին Թովմասի և դարբին Գոտֆրիդի առաջ։ Քոթոթը շարքի վերջում լուրջ-լուրջ շրթունքներն էր լիզում։

— Ի՞նչ կա, տղաներ,— խստությամբ հարցրեց Թովմասը, մինչդեռ դարբինը ժպտում էր բեղի տակ։

— Թույլ տվեք պալատի դարպասը բաց անել...

Ճաշից հետո կռիվը նորից սաստկացավ։ Պալատի պաշտպանները բոլոր թնդանոթներից կրակ բաց արին, կամենալով մի անգամից ճնշել դրսի դիմադրությունը։ Զորքն արդեն խնդրում էր թագավորից թույլ տալ դուրս գալու պալատից և թշնամուն ոչնչացնելու բաց ճակատամարտում։ Բայց Թոբիլ Առաջինը կտրականապես արգելեց այդ խելագարությունը...

Այդ միջոցին Թովմասն ու դարբինը ուշի-ուշով հետևում էին այն ելարանին, որը դրված էր պալատի աջ աշտարակի և դարպասի միջև։ Ելարանի վրա ոչ մի զինվոր չկար, ուստի զարմանալի էր, թե ինչն է այդպես գրավել նրանց ուշադրությունը։ Նրանք ոչ մի վայրկյան հայացքները չէին կտրում սանդուղքի ճաղերից։ Եվ, զարմանք բան, սանդուղքը ճռճռում էր, ասես վրայով մարդ էր բարձրանում, իսկ մարդ չկար։ Մեկ էլ ճռռումը դադարեց, ելարանն անշարժացավ։ Երևի քամին էր այդպես տարուբերում երկար փայտե սանդուղքը։

Դարբինը և Թովմասը նայեցին իրար, ժպտացին ու հանգիստ շունչ առան։

— Պատրա՛ստ սպասել ներխուժման հրամանին։

Հրամանը բերնեբերան անցավ բոլոր ջոկատներով.

— Պատրա՛ստ սպասել ներխուժման հրամանին։

— Պատրա՛ստ սպասել ներխուժման հրամանին...

— Պալատի գլխավոր մուտքից։

— Պալատի գլխավոր մուտքից...

— Տերուկը պետք է ամեն մեկիս մի-մի մահակ տար,— շշնջաց Աշոտը, երբ նրանք արդեն պարսպի վրա էին։ Տասը քայլ այն կողմ կանգնած էր պահակ զինվորը և ուշադիր նայում էր ներքև։

— Այս մեկի համար էլ շնորհակալ եղիր,— շշուկով ասաց Տիգրանը։

— Այո, իհարկե։ Բայց ո՞վ է տեսել չորս հոգով նստեն մի ձի, դեռ Քոթոթն էլ չհաշված։

— Մեր ձին հասարակ ձի չէ։

— Այդ հիմարը տնկվել է ուղիղ ճամփի վրա, ի՞նչ անենք։

— Պետք է մի կերպ կողքով անցնենք։ Մհեր, Քոթոթի երեսը շուռ տուր մյուս կողմ, չհաչի։

Հանկարծ պահակին թվաց, թե կողքով մարդիկ են անցնում, գլուխը շուռ տվեց՝ ոչ ոք չկար։ Հանգստացավ ու նորից հայացքը հառեց ներքև։

Ամենից դժվարն իջնելն էր, և Աշոտը շարունակ տրտնջում էր քթի տակ։

— Հրամանատար, օրինակ ցույց տուր,— շշնջաց Տիգրանը։

— Կռվի մեջ՝ խնդրեմ, օրինակ ցույց տամ, իսկ սա ի՞նչ է որ...

— Համ-բե-րու-թյուն...

— Դե, դու էլ...

— Հասանք,— շշնջաց Մհերը։

Իսկապես, արդեն ներքևում էին։ Կանգ առան հանգստանալու։ Դարպասն այդտեղից հարյուր





# Պատանի շախմատիստի ԴՊՐՈՑ

## դասավանդում է աշխարհի չեմպիոն ՏԻԳՐԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԸ

### ԲՆՈՐՈՇ ԿՈՄԲԻՆԱՑԻՈՆ ԵՂԱՆԱԿՆԵՐ

Շախմատային պարտիան բաղկացած է անընդմեջ շարունակվող քայլերի շղթաներից: Ընդհանուր նպատակով միավորված քայլերի շարքը ընդունված է անվանել տարբերակ (վարիանտ): Իր հերթին՝ ստիպողական տարբերակը, այսինքն՝ այնպիսի տարբերակ, որի ընթացքում խաղակիցները չեն կարող խուսափել իրադարձությունների գլխավոր ճանապարհից, առանց զոհաբերության հետ կապված նյութական կորուստների՝ կոչվում է կոմբինացիա:




Այս դրությամբ քայլը սպիտակներինն է: Դիրքը գնահատելով միայն վերացական՝ գործոնների հիման վրա՝ կարելի է սխալվել: Կողմերի արքաները զրկված են զինվորային «ծածկույթից»: Այս հանգամանքը, ի դեպ ասած, հատկապես կարևոր է, երբ խաղատախտակի վրա, ինչպես տվյալ օրինակում, մնացել են ծանր ֆիգուրներ: Նման դիրքերում հաջողության երաշխիքը իբրև կանոն՝ քայլի իրավունքն է: Սկսող կողմը գրոհում է թույլ պաշտպանված արքայի դիրքը և հասնում հաջողության: Առաջին հայացքից տվյալ դիրքը կանոնների բացառություն է կազմում,

---

*քայլի վրա էր: Երկու հաղթանդամ զինվորներ, հրացանները ծնկներին, անշարժ բարացել էին դարբասի աջ և ձախ կողմը: Կողքից պահակատանը հանգստություն էր տիրում: Ամեն ինչից երևում էր, որ հատուկ ուշադրություն է դարձվում դարբասի պահպանությանը: Ո՛չ մի աղմուկ, ո՛չ մի ավելորդ շարժում:*

*Աշոտը, Տիգրանը և Արտակը, ինչպես պայմանավորվել էին, իջան «ծիուց» ու կպան պարսպի նրուստին: Մհերը Քոթոթի հետ շարունակեց ճանապարհը: Նա վախենում էր, որ հանկարծ Քոթոթը սկսի հաչել ու ամեն ինչ փչացնի: Դրա համար էլ շատ դանդաղ էր առաջանում, աշխատելով շանը հանգստացնել: Վերջապես, ահա դարբասը: Ա՛յ թե պահակներ են, հա՜... Որտեղից էլ գտել են էս լողլողներին: Հիմի հարկավոր է սրանց կոճակները կտրել: Կռանալու կարիք էլ չկա, էնքան որ լոլոզ են: Ղ՛րթ... կը՛տ-կը՛տ-կը՛տ-կը՛տ... էս մեկը պատրաստ է: Քոթոթ, խելոք, դեռ ժամանակը չի... Մի քիչ էլ, մի քիչ էլ... Ընը՛, ղը՛րթ... կը՛տ-կը՛տ-կը՛տ-կը՛տ... Հիմա գործի անցիր: Եվ Մհերը ցած դրեց Քոթոթին ու ինքը մի կողմ քաշվեց:*

*Քոթոթը հենց կարծես դրան էր սպասում. նետվեց պահակների վրա ու վայրկենապես երկու հսկաների շալվարն էլ ցած քաշեց... Ապա, կարծես իր արածից գոհ, սկսեց ուրախ հաչոցով պտտվել նրանց շուրջը, կախ ընկնելով մերթ մեկի, մերթ մյուսի շալվարից: Պահակներն անճարակ կերպով պտտվում էին տեղներում, աշխատելով շանը հեռու փախցնել ու վեր քաշել շալվարները, բայց Քոթոթը պոկ չէր գալիս, մինչև որ երկու հսկաներն էլ գերանների պես ցած տապալվեցին:*

*Իրարանցման վրա պահակատնից դուրս թափվեցին մյուս պահակները... Համոզվելով, որ ներսում ոչ ոք չկա, Մհերը ծլկեց պահակատուն:*

*Դե, արդեն ժամանակն է...*

*Տղաները մի համազարկ տվին, որը պետք է ծառայեր նաև իբրև գրոհի ազդանշան: Պահակները պատասխան կրակ բացեցին...*

(Շարունակելի)

որովհետև «c 8» դաշտի վրա սպիտակ նավակով միակ հնարավոր շախը թվում է, թե զինվորի կորուստի կհանգեցնի: Այլապես, քայլի հերթը կանցնի սևերին, և սպիտակների արքայի վիճակը վատ կլինի:

Սակայն շախմատը իր հմայքը կկորցներ, եթե նույնիսկ նման խաղացի դատողություններով հնարավոր լիներ մինչև վերջը ըսպառել դիրքի ողջ բովանդակությունը: Եվ ահա ուժի մեջ է մըտնում շախմատային հրաշքը՝ կոմբինացիան:

1. Նc8+Ն:c8 2. Թa7+!! Ա:a7 3. bcՁ+. և 4. Ձ:e7: Կոմբինացիայի շնորհիվ սպիտակները շահում են մեկ ֆիգուր և հաղթում:




Սևերը նյութական գերակշռություն ունեն: Սակայն հետևում է 1. Նd8+Աb7 2. Նb8+, ապա 3. Ձc6+ և 4. Ձ:e5:

Շախմատի զարգացման դարավոր պատմության ընթացքում ըստեղծվել են մեծ քանակությամբ բազմազան կոմբինացիաներ: Այսօր մենք կծանոթանանք դրանցից մի քանիսին:







## «ՄԱՐԱԲՈՒՆԵՐԻ ԵՐԿՐՈՒՄ»

Արամն ու Աշոտը պատշգամբում նստած նայում էին կապույտ երկնքին:

— Դու չես կարող ճանապարհորդ դառնալ,— շարունակեց Աշոտը:

— Կդառնամ, կտեսնես, որ կդառնամ...

— Իսկ որքա՞ն ժամանակ կարող ես ծարավ մնալ...

— Պատահել է, որ ոչ մի դասամիջոցի չեմ խըմել,— ասաց Արամը, բայց նկատելով Աշոտի ժպիտը, որոշեց ասել.— Մի ամբողջ օր կարող եմ ծարավ մընալ:

— Ուրեմն չես կարող ճանապարհորդ դառնալ: Անապատում օրերով ծարավ են մնում: Ջուր չկա: Պետք է գիմանալ, մինչև որևէ ջրհոր գտնվի կամ հանդիպես որևէ ճանապարհորդի: Անապատում ջուրն ամեն ինչից թանկ է: Անփորձները խոկույն վրա են սրծնում, խմում ագահությամբ, որից հետո սկսվում են սրտախառնոցները, ստամոքսի ցավերը, գլխապտույտներն ու վերջապես ծանր հիվանդությունը՝ անապատային տենդը:

— Ծարավ կմնամ, թեկուզ քանի օր, կմնամ, միայն թե երբ գնաս ճանապարհորդելու, ինձ էլ քեզ հետ տանես:— Արամն աղերսագին նայեց և պատասխան չստանալով ավելացրեց.— Կտանե՞ս...

— Չգիտեմ, կմտածեմ,— իրեն բավականաչափ մեծ ձևացնելով, ասաց Աշոտը,— իսկ եթե անապատում փոթորիկ բարձրանա, ի՞նչ կանես:

— Ինչ դու անես, այն էլ ես կանեմ:

— Իսկ եթե այդ ժամանակ ես քո կողքին չլինե՞մ...

Արամը տխուր հայացքը խոնարհեց ավազներին.

— Ուրեմն ինձ չե՞ս տանի:

— Դե, կտանեմ, միայն թե պետք է մինչև այդ որոշ բաներ իմանաս, թե չէ փոթորկի մասին անգամ չգիտես... Իսկ փղերի մասին որևէ բան գիտե՞ս կամ, ասենք, ջայլամների...

Լռեցին: Աշոտը մտածեց ամենահեշտ հարցը և ասաց.

— Իսկ եթե հանկարծ սովածանաս, կարո՞ղ ես վիշապի միս ուտել:

— Ինչպե՞ս կարելի է այդ զզվելի սողուններին ուտել...

— Իսկ գիտե՞ս, թե նրանք որքան համեղ են... ավելի համեղ, քան կոկորդիլոսները:

— Իսկ ջայլամի միսը ուտո՞ւմ են:

— Ուտում են:

— Ես ջայլամի միս կուտեմ: Հավի նման են, համով կլինեն:

— Իսկ եթե առյուծը հարձակվեց, ի՞նչ կանես...



Թվում է, թե սպիտակների գործերը լավ չեն: Սպիտակների միակ հույսը անցողիկ զինվորներն են: Սակայն նրանց առաջխաղացումը հուսալիորեն կասեցված է:

Բայց... 1. Չc6!!. «գծերի հատման կետի» մոտիվի գեղեցիկ կոմբինացիաներից մեկը որոշում է ամեն ինչ: Դժվար չէ համոզվել, որ սևերը ինչով էլ վերցնեն «c6»-ի ձին, սպիտակները արագորեն վճռական նյութական առավելություն կստանան:

Որպեսզի կոմբինացիաների որոնումները ապարդյուն չանցնեն, պետք է իմանալ տիպիկ մոտիվները և մտահղացումները: Օրինակ, նույնիսկ անփորձ շախմատասերները գիտեն նման մատային դիրքը:



Իսկ այժմ տեսեք գրոսմայստերներ Պիլսբերիի և Մարոցիի պարտիայի խաղավերջը:



Սպիտակները ավելորդ որակ ունեն, սակայն սևերի նյութական փոխհատուցումը բավականաչափ է: Չէ՞ որ փիղը և չորս զինվորը նավակից ուժեղ են: Բայց տեսեք, թե ինչպես արագ ավարտվեց խաղը: 1. Թh6 Թ:e5 2. Թ:h7+! Ա:h7 3. Աg 2 ×!:

Իմանալով ստորև բերված մատային դիրքերը, լուծեցեք դրանց հաջորդող օրինակները.

1). Սպիտակներ՝ Աh1, զg3 (2) Սևեր՝ Թh3 (1)

*Սպիտակներ՝ Աh1, Թe4, Նg1, զզ. a2, b2, c3. d5, f3, h2(9): Սևեր՝ Աh8, Թf2, Փh3. Ձf5 զզ, b7, g7, h6(7):*

*Սևերը սկսում են և հաղթում:*

*2) Սպիտակներ՝ Ձa6 Ձb6(2): Սևեր՝ Աb8, Նb7, զa7(3)*

*Սպիտակներ՝ Աg1, Թh6, Նe3, Ձe7, Ձf5 զզ a2, b2, c2. f4, g2, h2(11): Սևեր՝ Աh8, Թc5, Նa8, Նf7, Ձc4, Ձd7, զզ. a6, b7, c7, f6, h7(11):*

*Սպիտակները սկսում են և հաղթում:*

*3) Սպիտակներ՝ Փh1, Փa7, Ձb5(3): Սևեր՝ Աb8, Նc8, զ. c7(3):*

*Սպիտակներ՝ Աg1, Թh3, Նd1, Նf1, Փc2, Փc3, Ձg5, զզ a2, b2, c4, f2, g2, h2(13): Սևեր՝ Աg8, Թc7, Նa8, Նf8, Փb7, Փe7, Ձg4, զզ. a7, b6, e6, f7, g6, h5(13):*

*Սպիտակները սկսում և հաղթում են:*

*4) Սպիտակներ՝ Փg3. Ձa7(2): Սևեր՝ Աc8, Փd8, Ձb7, Ձd7(3):*

*Սպիտակներ՝ Աg1, Թa4, Նb1, Նf1. Փf4, Ձb5, զզ. a2, c4, f2 g2, h2,(11). Սևեր՝ Աc8, Թd7, Նd8, Նh8, Փc5, Ձf6, զզ. a7, b7. d4. f7, g7, h7(12):*

*Սպիտակները սկսում են և հաղթում:*

*— Չգիտեմ...*

*— Իսկ ես գիտեմ... գիտեմ, թե ինչպես են առյուծներ ու վագրեր որսում, փղերին գերի վերցնում...*

*— Ափսո՞ս, որ ես չգիտեմ այդ բոլորի մասին... դու որտեղի՞ց ես սովորել...*

*— «Մարաբուների երկրում» գրքից: Հեղինակը Ցարիանն է: Այդ գիրքը մեծ գիտնական Ալֆրեդ Բրեմի՝ Աֆրիկայում կատարած ճանապարհորդությունների մասին է: Շատ հետաքրքիր գիրք է: Նրանից շատ բան կարելի է սովորել: Մինչև այդ գիրքը չկարդար, չես կարող ճանապարհորդ դառնալ:*

*— Հիմա ժամը քանի՞սը կլինի,— հանկարծ հարցրեց Արամը:*

*— Հազիվ չորսը:*

*— Գնանք, քանի գրադարանը չի փակվել:*

*Նրանք իսկույն դուրս եկան տանից ու գնացին գրադարան...*

*Ռ. ԳԵՎՈՐԳՅԱՆ*

**«ԿԱԼԼԵ ԲԼՅՈՒՄԿՎԻՍՏԻ ԱՐԿԱԾՆԵՐԸ»**




Այս գրքի հերոսները՝ Կալլեն, Եվա-Լոտտան, Անդերոնը և մյուս երեխաները վաղուց արդեն դարձել են աշխարհի բազմաթիվ երկրների պատանի ընթերցողների լավ բարեկամները:

Շվեդացի ժամանակակից գրող Աստրիդ Լինդգրենի «Կալլե Բլյումկվիստի արկածները» վիպակը թարգմանված է մի շարք լեզուներով:

Լույս է տեսնում 1923 թվականից

# ՊԻՈՆԵՐ

4 ԱՊՐԻԼ 1967

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը*
*Եկ. ՄԻՆԱՍ ԱՎԵՏԻՍՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ.

**„Пионер“** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—68 16, 2—59—06։*

*ՎՖ 06372։ Պատվեր՝ 338։ Տպաքանակ՝ 47,000 Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 5 IV 1967 թ.։ ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ։ Երևան, Տերյան փ. № 91։*

Գինը՝ 10 կ.



ԻՆՉՈՒԿ ՀԵՏԱՔՐՔՐԱՍԵՐԻ ԱԿՈՒՄԲ

Ինչո՞ւ Ե՞րբ Որտե՞ղ

## ՄԻՋԱՏՆԵՐԸ ԽՈՍՈՒՄ ԵՆ

Մարդիկ վաղուց են հետևում միջատներին, ուսումնասիրում են նրանց կյանքը: Ուսումնասիրվում են հատկապես մրջյունները, որոնք շատ աշխատասեր, խիզախ ու համերաշխ միջատներ են: Սակայն գիտնականներին ամենից շատ զարմացրեց այն, որ մրջյունները, ինչպես նաև մեղուները, բզեզներն ու տերմիտները, ունեն իրենց լեզուն: Երկար ժամանակ գիտնականները չէին կարողանում հասկանալ, թե դա ինչ լեզու է: Խոսքն, իհարկե, այն ձայների մասին չէ, որ մրջյուններն արձակում են ծղրիդի՝ «ջութակ» հիշեցնող հատուկ օրգանի միջոցով:

Գիտնականները նկատեցին, որ նույնիսկ այն ժամանակ, երբ միջատները չեն կարողանում ո՛չ տեսնել, ո՛չ էլ լսել իրար, ինչ-որ անհայտ ձևով այնուամենայնիվ կարողանում են խոսել իրենց կենսական հարցերի շուրջը, ինչպես օրինակ՝ կերի հայթայթման, բնակարանային հոգսերի և թշնամու հարձակման մասին:

Երևի մինչև այսօր էլ միջատների այդ խորհրդավոր լեզուն գիտնականներին հանգիստ չտար, եթե գործին չմիջամտեր... քիմիան... Այո՛, այո՛, մի՛ զարմացեք, միայն քիմիան կարողացավ բացատրել, թե ինչպես են միջատները խոսում և նույնիսկ վերծանեցին առանձին բառեր: Բանն այն է, որ ինչպես պարզվեց հետագայում, այդ լեզուն քիմիական լեզու է, իսկ բառերը շատ բարդ նյութեր են:

Առանձնապես լավ է զարգացած մրջյունների քիմիական լեզուն: Նրանք այդ լեզվից օգտվում են գրեթե միշտ:

Իսկ ինչպե՞ս: Մրջյուններն ունեն հատուկ գեղձեր, որոնք հոտավետ նյութեր՝ ֆորմոններ են արտադրում:

Ասենք թե մրջյունը մի որևէ գործով ճանապարհ է ընկնում որևէ ուղղությամբ: Նա մի քանի քայլ կա-

տարելով հանկարծ կանգ կառնի, կիպվի գետնին կամ խոտերին ու էլի կշարունակի իր ճանապարհը: Եվ որտեղ որ կանգ առնի, այնտեղ հոտավետ մի գծիկ կթողնի: Հենց դա էլ բառ է: Մի քանի քայլ էլ կանի և դարձյալ մի բառ կթողնի: Այսպես, ամբողջ ճանապարհին կթողնի իր գծիկ-բառիկները:

Ուր էլ որ գնա մրջյունը, չի մոլորվի: Գծիկ-բառիկները նրան տուն կհասցնեն: Վերադարձին նա նույնպես ճանապարհի վրա «բառեր» կթողնի: Եվ նայած թե որտեղ է լինում, ինչ է գտնում՝ թողած բառերն էլ ըստ այնմ տարբեր բուրմունք են ունենում: Հենց որ այդ բառերին մի ուրիշ մրջյուն հանդիպի, իսկույն կհասկանա, թե ինչ է ասել իր ընկերը՝ ո՞ր կողմի վրա է կերը, ի՞նչ հեռավորության վրա և ի՞նչ կեր է: Եթե այդ ամենը նրան հետաքրքրում է, ապա նա նետվում է ցույց տված ուղղությամբ, ինքն էլ իր հերթին ճանապարհին թողնելով սեփական գծիկ-բառիկները: Նրան կհետևեն երրորդ, չորրորդ մրջյունները: Որքան շատ մրջյուն անցնի, այնքան ավելի ընդգծված և որոշակի կնշվի ճանապարհը: Կարելի է ասել,



որ ճանապարհն ինքը կսկսի կանչել մրջյուններին.

— Շո՛ւտ, շո՛ւտ վազեք, գնացեք ուղիղ, անցեք կոտրված աղյուսի մոտով, հետո թեքվեք դեպի ձախ, ձողի վրայով անցեք առվակը, մագլցեք տան պատի վրայով, հասեք ծայրի պատուհանին և մտեք շրջանակի տակի ճեղքով. պատուհանի գոգին մի աման կա, մեջը լիքը քաղցր մուրաբա:

Բայց բավական է, որ մեկ-երկու մրջյուն ընկնեն վտանգի մեջ: Իսկույն վրա կհասնեն մոտերքում գտնվող ընկերները: Այդ նշանակում է, որ նրանց հասել է տագնապի ֆորմուլը: Եվ յուրաքանչյուրն իր հերթին կարտադրի այդ նյութի կաթիլներից: «Տագնապ» քիմիական բառը կհաղորդվի մրջյունների աշխարհի բոլոր ծայրերը և մրջնանոցը կսկսի եռալ: Ընդհատակից դուրս կնետվեն ռազմիկ-մրջյունների խմբերը: Եվ վա՜յ այն հանդուգնին, որը համարձակվել է վնաս հասցնել մրջյուններին և ժամանակին չի պոչը քաշել-հեռացել:

Կան՝ բառեր-ֆորմուլներ, որոնք նշանակում են «բոլորը հավաքվեն մի տեղ»: Կան բառեր, որոնք միջատներին ասում են, թե պետք է ծառայել մայր-թագուհուն, խնամել ձագերին կամ սնունդ փոխանակել մեկը մյուսի հետ:

Մրջյուններն ու միջատներն իրար հետ խոսում են ուրիշներին միանգամայն անհասկանալի լեզվով: Նույնիսկ մրջյունների տարբեր տեսակները մեկը մյուսին չեն հասկանում: Իսկ եթե ստիպված են լինում այնուամենայնիվ խոսել օտարների հետ, հատկապես թշնամու հետ, ապա ընտրում են այնպիսի բառեր, որոնք կտրում են թրի պես:

Միջատներից ոմանք թշնամու վրա այնպիսի նյութեր են բաց թողնում, որ վախեցնեն նրան, մյուսները «դիմում են» հակառակորդներին այնպիսի պերճախոս «բառերով», որոնք ոչ այլ ինչ են, եթե ոչ՝ թույն:

Երբ միջատների լեզուն բավականաչափ ուսումնասիրվի, մարդիկ շատ տհաճություններից կազատվեն: Օրինակ, կարելի կլինի ջուրջը այնպիսի նյութեր ցանել, որոնք գյուղատնտեսության վնասատուներին կհրամայեն հավաքվել մի տեղ: Նրանք կհավաքվեն, իսկ մարդիկ առանց դժվարության բոլորին կոչնչացնեն: Կամ, ասենք, անտառ գալով, գրպանից կհանես մի սրվակ, բաց կանես կափարիչը, և մոծակները քեզնից խույս կտան:

Միջատների քիմիական լեզուն իմանալը մարդկությանը շատ ու շատ հոգսերից կազատի:

## Պատասխանում ենք

**«Պիոներ» № 2**

*«ՔԵՐԱԿԱՆԱԿԱՆ ԽՆԴԻՐ»—1. Կապ: 2. Ուժյուն: 3. Բայ: 4. Բարակ: 5. Բութ: 6. Ջութակ: 7. Սուր: 8. Թենիս:*

*Ուղղահայաց վանդակում՝ ձայնարկություն:*

*«ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ»— Լուսին: Քայլող էքսկավատոր: Լուսանկարչական ապարատ: Ռադիոընդունիչ: Լուսին: Նապաստակ: Մագնիտաֆոն: Տիեզերանավ: Կարուսել:*



Հայրիկս ՊԵՏՐՈՍՅԱՆ ՆՈՒՆԵ
Երևան, 6 տ.



Տուն ԱՍԱՏՐՅԱՆ ԼԻԴԱ
Աշտարակի շրջ., Ագարակավանի միջն. դպրոց, 5-րդ դաս.



Նատյուրմորտ ՄԻՆԱՍՅԱՆ ՄԱՆՎԵԼ
Սպիտակի շրջան, գ. Թափանլի, 3-րդ դաս.



Ղարաբաղյան նուռ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ ՍԱՄՎԵԼ
Լեռնային Ղարաբաղ, Ստեփանակերտ, № 2 դպրոց, 8-րդ դաս.



Մեր տունը ՎԱՐԴԱՆՅԱՆ ԷՄՄԱ
Արտաշատի շրջ., Վ. Արտաշատ, 2-րդ դաս.